ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԱ.

# ԳՆՈՒՆԵԱՑ ԵՒ ՌՇՏՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1952

PRINTED IN AUSTRIA

# DIE FÜRSTENTÜMER DER GNUNIER UND RŠTUNIER

VON

DR. P. HAMAZASP OSKIAN

MECHITHARIST



WIEN

MECHITARISTEN-BUCHDRUCKEREI

1952

# ԳՆՈՒՆԵԱՑ ԵՒ ՌՇՏՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵՑ
ԴԿՏ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1952

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ստոյգ իրողութիւն է որ հայ նախարարները կամ նախարարութիւնները մեր ազգային պատմութեան մէջ շատ մեծ դեր կատարած են։ Եւ սակայն ցաւ է արտայայտուիլ որ անոնց մենագրութիւնները դեռ չեն գրուած եւ կամ հրապարակ հանուած։

Դոկտ. Հ. Սահակ Կոգեանն էր որ 1926ին Վիեննայի մէջ լոյս ընծայեց «Կամսարականները, Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց...» ընտեր մենագրութիւնը։ Անոր շարունակութիւնը կամ հետեւողութիւնը թող համարուի ներկայս[1], որ այս քաղաքին մէջ աղբիւրներու նուազութեան եւ ուրիշ աննպաստ պարագաներու հետեւանքով ցանկալի կատարելութեան չհասաւ։

Այս հատորը կ'արտատպուի «Հանդէս Ամսօրեայ»էն (1951, Թ. 11—12, 1952, Թ. 1—3, 4—6, 7—9) Համավասպուրականի հայրենակցական Միութեան (Ամերիկա) օժանդակութեամբը։ Այս՝ կը յիշեմ շնորհակալութեամբ։

Բէյրութ, 10 Նոյ. 1952։

ՀԵՂԻՆԱԿԸ

---

[1] Հրատարակութեան արդէն պատրաստ է՝ «Անձեւացեաց եւ Ակէոյ (Ակէացւոց) նախարարութիւնները»։

## 1· ԳՆՈՒՆԵԱՑ ԾԱԳՈՒՄԸ

Մովսէս Խորենացի Գնունեաց նախարարութեան ծագումի մասին կ՚արտայայտուի՝ «Գիտեմ զԳնունիսդ գինի ունիս, որ առաջի Թագաւորին պատրաստէր զըմպելիսն... ունէր եւ կոչումն անուան Գին, ընդ որ կարի մեծապէս զուարճացեալ ասեն, Վաղարշակ, կարգէ ի Թիւ նախարարութեան ազգաց: Են այս երկու տունքս ի զաւակէ Սենեքերիմայ՝ Արծրունիս եւ Գնունիս» (Պատմութիւն Հայոց, Վենետիկ 1881, էջ 168—169· Հմմտ. եւ Հ. Ինճիճեան, Հնախօսութիւն, Ա·, Վենետիկ 1835, էջ 313): Նախապէս Հայ Պատմահայրը հաղորդած էր՝ «Իսկ Արգամոզանն յարեւելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ, ի սմանէ, ասէ պատմագիրն լինել զԱրծրունիս եւ զԳնունիս: Արդ յիշելոյն մեզ զՍենեքերիմ այս էր պատճառ» (անդ, էջ 106)[1]:

Գարագաշեան շատ տեղին կը գրէ՝ «Այսոքիկ են ահա Հայաստանեայց Նախարարութեանց ո՛ւստն եւ զխա՛րդն, զոր խոստանար տալ մեզ Խորենացին յունական պատմութիւններէ: Ի պատմութեան աստ Խորե–

[1] Հմմտ. եւ Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ 1885, էջ 34:

նացւոյն գնախարարութեանց կան ընդհանուր տեղեկութիւններ, որ կրնան համարուիլ պատմական եւ զորս դիւրին էր Խորենացւոյն առնուլ ոչ թէ այն անուան յունական պատմութիւններէն, այլ իւրոյ ժամանակին ստոյգ կամ սխալ աւանդութիւններէն...: Չենք կրնար Խորենացւոյ Երկրորդ Գրոց է. եւ Ը. գլուխները ամբողջութեամբ, կամ ինչպէս Խորենացին կ'անուանէ, այն գրուագը մեծ եւ հաւաստի պատմութեամբ լի ընդունիլ իբրեւ ստուգիւ պատմական, հայեցեալ յանստուգութիւնն անձին Վաղարշակայ, ընդ որում կապեալ է այն գլուխներու պատմութիւնը. պատմութիւն մը, որ մեծաւ մասամբ հիմնուած է անուններու յարմարութեան կամ բանագրօսեալ ստուգաբանութեանց վրայ՝ քան ստոյգ պատմական աղբիւրաց» (Քննական պատմութիւն Հայոց, Ա., Թիֆլիս 1895, էջ 256—257. Համմտ. նաեւ Ալիշան Հ. Ղ., Այրարատ, Վենետիկ 1890, էջ 426):

Մինչ Բասմաճեան հայ նախարարութիւններէն 45 նախարարութիւններու ուրարտական ծագում կու տայ եւ ասոնց մէջ Արծրունիները կ'օղակէ, Գնունիները կը լռէ, բայց հարկ է ըսել թէ կայ եւ այն կարծիքը որ «ունի» վերջաւորուած հայ նախարարութիւններու ուրարտական ծագում կը վերագրէ (Բանասէր, Դ., էջ 193, 239, 314, Ե., 286 եւ Կ. Բասմաճեան, Իսկական պատմութիւն Հայոց, Կ. Պոլիս 1914, էջ 56—57):

Markwart ինծմէ առաջ ուշադիր եղած է, թէ Մ. Խորենացին Գնունիները Արշակունիներու շատ մերձ կը դնէ — արիւնով (Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen. Wien 1930, էջ 561)։

Սարդուր Բ. (755—730) կ'արշաւէ Բուխշիանի եւ Իգանի երկիրները, որոնք Ղափանցեանի համաձայն (Ուրարտուի պատմութիւն, Երեւան 1940, էջ 178) կը գտնուէին Կարսի եւ Չլտըր լիճի միջեւ եւ անոր վարկածին համեմատ՝ Իգանի տոհմէն գուցէ սերած ըլլան Գնունիները։ Բայց ձայնափոխութիւնը նկատի չէ առնուած. նմանապէս երկիրն ալ այնքան չի յարմարիր (Իգանիի մասին հմմտ. նաեւ Ն. Ադոնց, Նոր պատմութիւն Հայոց, Բարիզ 1946, էջ 162 եւ 202)։

Այսպէս՝ կարելի չէ Գնունիներու ծագումի մասին ստոյգ եզրակացութեան յանգիլ։

## 2. ԳՆՈՒՆԵԱՑ ԵՐԿԻՐԸ

Դժուարին է հաւաստեաւ ըսել, թէ Գնունիները Հայաստանի ո՞ր մասն իրենց սեպհականութիւնն ու հօրենական ժառանգութիւնը կը նկատէին, ուստի կարելի չէ գծել անոր սահմանները։

Հ. Ինճիճեան կը գրէ. «Իսկ վասն երկրին Գնունեաց թէպէտ յայտնի ինչ ոչ գտանեմք ի գիրս, այլ ի բանից Վարդանայ յայտ է լինել Աղիովիտ գաւառ Տուրուբերանոյ,

մանաւանդ զի չարունակող Թոմայի Արծրունոյ զԱրճէշ քաղաք Աղիովիտ գաւառի կոչէ քաղաք Գնունեաց» (Աշխարհագրութիւն Հին Հայաստանեայց, Վենետիկ 1835, էջ 125—126): Նոյնպէս եւ զՇահապիվան լեառն (զուցէ այժմ Ալատաղ կոչուածը. հմմտ. Ալիշան, Այրարատ, էջ 512) Ծաղկոտն գաւառին Արարատու ի մօր կողմանէ ժառանգութիւն համեալ Գնելոյ Գնունւոյ, ասէ Խորենացին Գ. 23...: Բայց մթին իմն է յիշատակեալն ի Մեսրոպայ ի Թիւն Ե. Ապա մի ոմն ի մեծ նախարարացն ի գաւառէն Ծիրականայ, որ էր մխանձնացեալ ի լերինս, յազգէն Գնունեաց, որում անունն էր Պարգեւ» (Հնախօսութիւն, Ա., էջ 153—154):

Ինճիճեանի յիշատակած հայ պատմագիրներու, մանաւանդ Վարդանի, տեղեկութիւններու վրայ հիմնուած՝ Աղիովիտ, Արճիշակովիտ եւ Առբերանի (Բերկրի) գաւառները կրնանք Գնունիներու ժառանգութիւնը համարել, եթէ ոչ իրենց ամբողջական տարածութեամբը, գոնէ կարեւոր մասերովը (հմմտ. J. Markwart, Südarmenien ... էջ 404, 561. Թովմաս Արծրունի, Պատմ., էջ 277 եւ Տեղեկագիր Գիտութեան եւ Արուեստի Ինստիտուտի, 1927, էջ 182):

Աղիովիտի հնագոյն ձեւն է Աղւոյ-հովիտ: «Գաւառս էր, ինչպէս կը գրէ Հիւբշման, Վանայ լճին հիւսիս-արեւելեան կողմը, հոն ուր այսօր ալ Արճիշոյ աւերակները նշանակուած են աշխարհացոյցներու վրայ: Ար-

ճիշն է հին հայերէն Արճէշը, որ անցեալ դարուն կէսերը Վանայ լճին մէջ ընկղմած է» (Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 195· հմմտ. եւ Հ. Ս. Էփրիկեան, Բնաշխարհիկ Բառարան, Վենետիկ 1905, էջ 105)։ Դարձեալ՝ պէտք է նկատի առնել այն սերտ եւ յարափոփոխ յարաբերութիւնը, որ կայ Գնունիներու, Արծրունիներու եւ Արշակունիներու միջեւ (Markwart, Südarmenien... էջ 300 եւ 561)։

Իսկ Մեսրոպ Երէցի խօսքը կը լուսաւորուի, եթէ խորհինք որ ինչպէս քաղաքական աննպաստ պարագաներու հետեւանքով Աշոտ Բագրատունին «Երթեալ հազար արամբ յԱղիովիտ գաւառ եւ սա ինքն գումարեալ զամենայն ազգն (Գնունեաց) ախիւ իւրեանց տանի բնակեցուցանէ ի Տայս» (Վարդան, Պատմ. Հայոց, Վենետիկ 1862, էջ 77); այսպէս՝ եւ քաղաքական եւ ուրիշ պարագաներու ճնշումով Գնունի մը կամ Գնունեաց ճիւղ մը Շիրակ հաստատուած ըլլայ եւ կամ նաեւ՝ Մովսէս Խորենացիի ազդեցութեան տակ գրուած ըլլայ (հմմտ. վերը), եւ վերջինս ալ Գնէլ անունէն այդ յերիւրանքին հասած։

Հ. Ն. Ակինեան կ՚արտայայտուի՝ «Գնունեաց գաւառը կը տարածուի Վանայ հիւսիսային կողմը, ուր կը գտնուին Ամկայ բերդը եւ Բերկրին...։ Ըստ Շերենցի կը համապատասխանէ այժմեան Թիմարայ գաւառին սահմաններուն։ Զարմանալի է որ ցայսօր առանց քննութեան մնացած է Հայոց հին պատմու-

թեան մէջ քաջածանօթ ազգիս գրաւած երկրին սահմանները։ Անանուն Արծրունին (էջ 308) առաջին անգամ կը յիշէ Գնունեաց գաւառը Արճէշ քաղաքով (յամի 1041), Վարդան պատմիչ (էջ 77) գաւառիս մէջ կը դնէ եւ Ալիովիտը...։ Ժէ. դարուն Առաքել Դաւրիժեցին պատմելով Սիրուն վկային նահատակութիւնը կը գրէ. «էր սա յաշխարհէն Վասպուրականի, ի գաւառէն Գնունեաց որ այժմ ասի Ամուկ, ի գեղջէն որ կոչի Ալիւր» (Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իր տաղերը, Վիեննա 1910, էջ 4, ծնթ. 1)։

Գնունեաց երկիրը եկեղեցական կամ կրօնական տեսակէտով աննշան չէր. 508ին գումարուած ժողովքին մէջ կը յիշուի՝ «Ի Պագուաէ, Գնունեաց եպիսկոպոսէ» (Գիրք Թղթոց, Թիֆլիս 1901, էջ 42—74), Դունայ ժողովքին կը մասնակցին (645) Թէոդորոս կամ Թորոս (Կանոնք Դունայ ժողովոյն, էջ 27), իսկ Մանազկերտի ժողովին (726) Յովհաննէս՝ եպիսկոպոսները (Հանդէս Ամսօրեայ 1905, էջ 216)։ Դարեր յետոյ երեւան կու գայ Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց տաղասացը (հմմտ. Հ. Ն. Ակինեան, Զաքարիա եպ. Գնունեաց, էջ 4—5)։

### 3. ԳՆՈՒՆԻՆԵՐՈՒ ԲԱՐՁՆ ՈՒ ՊԱՇՏՕՆԸ

Տրդատեան-Ներսէսեան, սակայն լաւագոյն՝ Սահակեան կամ Վռամական գահնամակի կամ բարձրաբերձութեան[2] համա-

ձայն Հայ նախարարութեան մէջ. օղակը կը կազմէ կամ աստիճանը կը գրաւէ Գնունեաց Տէրը, որ է՝ նախարարութիւնը: Աւելի նախադաս կամ գերադաս են Սիւնեաց, Բագրատունեաց, Արծրունեաց, Մամիկոնեանց, Կամսարականաց եւ Ամատունեաց նախարարութիւնները (Հմմտ. Ալիշան, Այրարատ, էջ 430): Վերոյիշեալ նախարարութիւններու Գնունեաց տոհմէն գերադաս ըլլալը կը հաստատեն նաեւ Ղ. Փարպեցի եւ Եղիշէ, ինչպէս Գր. Տէր-Պօղոսեանի կազմած համեմատական տախտակները կը հաստատեն (Հմմտ. Հանդէս Ամսօրեայ, 1895, էջ 22, 58—59):

Սակայն ժէ. աստիճանը կամ դասը — Հայ նախարարական կազմին մէջ — աննշան չէ, մանաւանդ թէ շատ պատուաւոր, երբ նկատի ունենանք՝ որ Գահնամակի վերջին նախարարութիւնն է Հ. (70): Իսկ Բասմաձեան Հայ նախարարութիւններու թիւը մինչեւ 256ի կը բարձրացնէ եւ անոնցմէ 45ի ծագումը ուրարտական կը համարի, ինչպէս Արծրունիներունը (Հմմտ. վերը կամ Բանասէր, Դ., էջ 193—196, 239—251, 314—317, Ե., 286. Հմմտ. եւ նոյնին Իսկական պատմութիւն Հայոց, Կ. Պ. 1914, էջ 56—57):

Հայ արքունիքը եւ աւագանին չէին կրնար Գնունեաց նախարարութիւնը անտեսել, վասն զի կրնար 500 այր ներկայացնել պատերազմի

---

2 Գահնամակի մասին հմմտ. Հ. Ս. Կոգեան, Կամսարականները, Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց Վիեննա 1926, էջ 54:

եւ յար ու նման պարագաներու: Դարձեալ՝ որովհետեւ նոյն նախարարութեան շատ կարեւոր պաշտօն ու գործեր վստահուած էին:

Մ. Խորենացին կը գրէ. «Գիտեմ զԳնունիսդ գինի ունիս, որ առաջի թագաւորին պատրաստէր զըմպելիսն, որ սքանչելի իմն գիպեալ եղեւ ըստ գործոյն եւ անունն, քանզի պատրաստէր զըմպելիսն արքային յընտիր եւ համեղ գինեաց» (Պատմ., էջ 168): Հ. Ինճիճեան կը մեկնաբանէ. «Տակառապետ արքայի, այսինքն պատրաստող զգինի եւ վերակացու մթերանոցաց գինւոյ, որ ըստ ճիշդ առման տարբերի ի մատռուակէ, որ ի սեղանի մատակարարէ զգինի» (Ինճիճեան, Հնախօսութիւն, Բ., էջ 153): Եւ դիտել կու տայ. «Բայց մատենագիրն (Խորենացի) պատմէ եւ ի գործ զինուորութեան ի կիր արկեալ ի սոցանէ» (անդ, էջ 153): Խորենացին այս արտայայտութիւնները կ'ընէ, այս է՝ Գնունիները գինւոյ պաշտօնեայ եւ զէնքի մարդ դիտէ ԳԻՆ անունէն եւ Բուզանդի սա շատ կարեւոր խօսքերէն՝ «Սկիզբն գործակալութեան հազարապետութեան աշխարհատեսն խնամակալութեան աշխարհաշէն, աշխարհատարած դեհկանութեան շինականաշէն ազգն Գնունեաց հազարապետն ամենայն երկրին» (Դ. 2):

Հայկազեան Բառարանի եւ Աճառեանի Արմատական բառարանի համաձայն (Դ. հատոր, էջ 14) Հազարապետ կը նշանակէ՝ պետ եւ գլուխ հազարաց, տնտես, վերակացու տան արքայի, հոգաբարձու, իշխան, նախա-

բար, թագաւորին տան մատակարար, քաղաքակալ (հմմտ. նոյն բառին մասին «Հանդէս Ամսօրեայ», 1898, էջ 316)։ Իսկ Մանանդեան (Տեղեկ. Ինստիտ., Ա., էջ 16) այս բառին իմաստ կու տայ՝ «Հանրային եւ շինարարական գործերի վերակացուն կամ գլխաւորը»։ Մինչդեռ Գարագաշեան կը գրէ. «Երեւելի պաշտօն էր նաեւ Հազարապետութիւնը, որ նոյնպէս յատուկ չէր մասնաւոր ցեղի մը։ Հազարապետն թուի թէ էր վերակացու եկամտից եւ հոգ կը տանէ մանաւանդ մշակութեան եւ բերոց երկրին» (Քնն. Պատմ., էջ 263)։ Իսկ «Եւրոպա» լրագրին մէջ (հրտ. Վիեննա 1849, էջ 207), ուր Գնունի նախարութեան համառօտ պատմութիւնը ներկայացուած է, կ'ըսուի. «Արշակ Բ.ին թագաւորութեան սկիզբը, երբ Հայաստան եղած շփոթութիւններէն հանդարտելու սկսաւ՝ Գնունեաց նահապետը, որուն ցեղը երկիրը շէնցնելու եւ մշակութեան շատ փոյթ կը տանէր, բովանդակ Հայաստանի պատիւն առաւ, որ գրեթէ հիմակուան ներքին գործոց պաշտօնն է»։

Նկատենք Փաւստոսի նախադասութեան բառերէն դեռ՝ «Դեհկանութիւն»։ Հայկազեան Բառարանը (Ա. հտր., էջ 608) ունի՝ «Դեհկանութիւն, կուսակալութիւն, իսկ պ. եւ ար. տիհգան, տիխհան է՝ գիւղապետ, շինական»։ Աճառեան «Հայերէն Արմատական Բառարան»ին մէջ (Բ. հտր., էջ 484) կը դնէ՝ «Դեհկան, կուսակալ, գաւառապետ, պհլ.

dehkan, պրսկ. dihgān, dihkān, գիւղացի. արաբերէն dihqān, գիւղացի, ազնուական, վաճառական, բանուորների գլխաւոր, գաւառի պետը, բռնակալ, dahkana, գիւղապետութիւն, հողաբաժանութիւն եւ մշակութեան պաշտօնէութիւն»։ Մինչ Մալխասեան իր «Հայերէն Բացատրական Բառարան»ին մէջ (Ա. հտր., էջ 502) ունի՝ «Դեհ, dīh, dēh, գիւղ, երկիր, գաւառ, կողմ. եւ դեհկանութիւն, պաշտօն կուսակալութիւն», իսկ աւելի ճոխ ծանօթութիւն կու տայ հազարապետ բառին նկատմամբ՝ «Հազարապետ... 2. Սասանեանների ժամանակ Հայաստանում արքունի գործակալ, որ երկրի հարկը հաւաքում էր եւ Պարսկաստան ուղարկում, ընդհանրապէս երկրի տնտեսական կեանքի վրայ հսկող։ 3. Արքունական տան ելեւմուտքը կառավարող անձ, էկոնոմոս կամ կոմոնոս, մեծ հազարապետ կամ հազարապետ Արեաց եւ Անարեաց, Սասանեանների ժամանակ Պարսկաստանում բարձրագոյն պաշտօնեան, Թագաւորի մերձաւոր խորհրդականը, որ վարում էր երկրի ներքին եւ արտաքին քաղաքականութիւնը» (անդ, Գ. հատոր, էջ 9)։

Ն. Ադոնց իր «Հայոց նախարարութեան ծագումը» երկին մէջ, զոր Գ. Գիւղալեան ռուսերէնէ հայերէն թարգմանելով 1949ին Բէյրութի մէջ հրատարակեց, կը գրէ՝ «Մեծ նշանակութիւն ունէր հազարապետի պաշտօնը։ Բոլոր իր յատկանիշներով նա համա-

պատասխանում էր Թէոֆիլակտի մօտ յիշուած երրորդ վարչութեան, որ իր մէջ պարփակում է տաս պոլիտիկաս Փրոնդիտաս, հակառակ պոլէմիքիս սինտաքսիսի: Փաւստոս պատմագրի մօտ հազարապետութիւնը կամ հազարապետութեան ծառայութիւնը որոշ իմաստով հակադրւում էր սպարապետութեան: Առաջինը բնորոշւում է որպէս աշխարհասեն իշխանակալութիւն եւ տարածւում է գեհկանութեան վրայ, այսինքն՝ հողագործ գիւղացիութեանը վրայ: Հազարապետութեան իշխանութեամբ օժտուած Գնունիների տոհմը կոչւում էր շինակաչէն: ... Հազարապետի իշխանութեան ենթակայ էր բովանդակ գիւղացիական բնակչութիւնը: Հազարապատի, Խիլիարխոս, հազարապետ՝ զինուորական տերմին է, որ Աքեմէնեանների օրով փոխադրուել է քաղաքացիական գործերի սահմանը: Քսենոֆոնի պատմածի համաձայն Կիւրոս մտահոգուած լինելով եկեմուտքի կանոնաւորումով ի նկատի ունենալով ընդարձակ պետութեան ծախքերը, որոնց այդ սահմանում կիրարկել զինուորական սխեմի բաժանումը եւ ստեղծեց դեկուրիններ, լոխագներ, խիլիարխներ եւ միրիարխներ՝ դիւրացնելու համար կառավարելը: Ըստ այս սխեմի հազարապետը պիտի նշանակէր պետական եկամուտների վարչութեան բարձրագոյն ատեանը: Այսպէսով հասկանալի է դառնում եւ նրա կապը հարկատու բնակչութեան, գիւղացիութեան հետ:

Թւում էր թէ հազարապետը պիտի վարէր հարկային բաժինը․․․։ Հէնց Միհր-Ներսէհի ժամանակ ոմն Մահգուշնասպ վարում էր հարկային մասը եւ կոչւում էր Vastriliosansar, այսինքն հողագործների պետ։ Այս որակումը յարմար է հազարապետութեան այն իմաստով՝ որ գործ է ածւում Փաւստոսի մօտ եւ կիրառւում Գնունիների տոհմի նկատմամբ․․․» (էջ 66—68)։

Հ․ Ակինեան «Եղիշէ վարդապետ եւ իր պատմութիւնն Հայոց պատերազմի» խորագրուած իր մատենագրական-պատմական ուսումնասիրութեան մէջ (Բ․ մաս, Վիեննա 1936, էջ 449—472) նկատի առած է նմանապէս «Հազարապետք Հայոց»։ Կը գրէ՝ «Հազարապետ բառին այս պէսպէս առումները ցոյց կու տան թէ ինչպէս մուտ գտած է այն առօրեայ կեանքին մէջ, ըստ այսմ, տան կայուածքի, ընչից մատակարարութեան վերատեսուչը կամ տնտեսը հայ ժողովրդեան ըմբռնմամբ հազարապետ է․ նոյնպէս հազարապետ է բերդի մը ընդհանուր հրամանատարը, պատասխանատուն, այսպէս՝ նաեւ բանակին մէջ կան ստորաբաժանումներ՝ տասնապետ, հարիւրապետ եւ հազարապետ» (էջ 454)։ «Հազարապետ սովորական առումէն զատ ունէր նաեւ պետական կազմին մէջ առանձին իմաստ, որով կը յարաբերուէր պաշտօնական-զինուորական մարմին մը․ այս առումը պարզ եւ բացայայտ կը տեսնուի Փ․ Բիւզանդի քով, որ կը գրէ Արշակի

գահակալութեան առթիւ. «Եւ նորոգեցաւ գուարթացաւ տէրութիւնն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս եւ զառաջինն. մեծամեծք յիւրաքանչիւր գահու եւ գործակալքն յիւրաքանչիւր չափու: Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն, աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատարած դեհկանութեան, Շինականաչէն ազգն Գնունեաց հազարապետն ամենայն երկրին» (անդ, էջ 453):

Հ. Ակինեան կը յաւելու՝ «Որովհետեւ հազարապետութիւնը Ամատունեա՛ց տոհմին սեպհական կ՚երեւայ, կը սպասուէր հոս Գնունեացի փոխարէն Ամատունեաց ընթերցուածը» (անդ, էջ 454):

Եւ ահա Հ. Ակինեան խոշոր սրբագրութիւն մը կ՚ընէ. «Այս հիմամբ պէտք է ուղղել նաեւ Փաւստոսի առաջին պարբերութեան՝ «Շինականաչէն ազգն Գնունեաց» բառերը, ոչ միայն վասն զի անճահ է շինականաչէն բառը եւ անպատշաճ դասական հեղինակի մը. այլ եւ նորանշան կը հնչուի՝ ազգն Գնունեաց՝ հազարապետն ամենայն երկրին. ազգ մը չէր կրնար բովանդակ երկրին հազարապետն ըլլալ: Խանգարումը ակնբախ է, զոր կ՚առաջարկեմ «Շինականաչէն ազգն Գնունեաց» կարդալ՝ Վաղարշ իշխան ազգին Ամատունեաց: Եթէ հազարապետութիւնը որոշ տոհմի մը սեպհականութիւն էր, այդ տոհմը միայն Ամատունեացը կրնար ըլլալ,» անդ, էջ 455—456):

Կը դժուարինք Հ. Ակինեանի այս արտագրութեան համամիտ գտնուելու, վասն զի անուններու եւ նոյն իսկ տառերու այսքան մեծ (եւ թուական) շփոթութիւն ոչ հեղինակի եւ ոչ ալ արտագրողի կարելի է վերագրել եւ երկրորդ գիրքին չէ անվարան ըսել՝ թէ Ամատունի նախարարութեան սեպհական կը թուի ըլլալ հազարապետութիւնը: Մանաւանդ որ հայկական մատենագրութեան մէջ Վահան Ամատունիի մասին հաղորդուած է՝ թէ էր «հազարապետ Հայոց մեծաց[3]» (Կորիւն, էջ 44—45), մինչ Օտայ Ամատունիի հազարապետ ըլլալը ստոյգ չէ (Ագաթանգեղոս, էջ 115): Իսկ Վաղարշ հազարապետի համար Փաւստոս չի վկայեր թէ Ամատունեաց տոհմէն ըլլայ (Պատմ. Վենետիկ 1933, էջ 40):

---

[3] Խորենացին (գուցէ Կորիւնի Վահան Ամատունիի մասին գրածէն ազդուած) կ'ըսէ՝ «Վահան Ամատունի ... ի ժամանակին յայնմիկ ի նա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն Հայոց աշխարհիս...» (Պատմ. Վենետիկ 1881, էջ 570): Նա Ամատունիները գիտէ՝ «Բնութեամբ Հրեայ» եւ Արտաշէս Թագաւորէն «գիւղիւք եւ դաստակերտօք» (անդ, էջ 288—289) ճոխացուած, բայց չի յիշեր թէ հազարապետութիւնն անոնց յանձնուած էր սերունդէ սերունդ:

[4] «Հազարապետութիւնը, որ է ներքին գործոց եւ հանրային շինութեանց նախարարութիւնը» (Հ. Ս. Տէր-Մովսէսեան, Պատմութիւն Հայոց, Վենետիկ 1922. էջ 234): Grousset R. կը գրէ՝ „D'après Asolik, ils firent gouverner l'Arménie par un nakharar arménien nommé Méjèj ou Mjèj, dont le nom est transcrit par les Grècs sous la forme de Mezzisios ou Mezetios. Mèjèj appartenait â la famille des Gnouni, qui, à la cour des anciens rois nationaux arsacides, possédaient la charge héréditaire de grand-échanson". (Histoire de l'Arménie, Paris 1947 էջ 236:

Նմանապէս Առաւանի, Վեհնամի, Մանանի եւ ուրիշ հազարապետներու (հմմտ. Հ. Ակինեան, անդ, էջ 467—472) Ամատունիներու տոհմէն ըլլալու հաւաստի վկայութիւն եւ ապացոյց չունինք:

Մինչեւ հիմայ ըսուածներն ամփոփելով կ'եզրակացնենք, թէ հայկական հազարապետութեան պաշտօնն էր՝ աշխարհին ներքին եւ տնտեսական բարօրութեան հոգածութիւնը[4] եւ այդ՝ ժամանակ մը — գուցէ երկարատեւ շրջան մը — յանձնուած էր Գնունի նախարարութեան: Մինչդեռ Մալխասեան կը գրէ՝ «Նա (հազարապետը) երկրի տնտեսութեան եւ հարկերի գլխաւոր տեսուչն էր եւ նրա իշխանութիւնը տարածւում էր շինականութեան–գլխաւորաբար հարկատու դասակարգի վերա... Փաւստոսի ասելով այս պաշտօնն եւս ժառանգական էր եւ պատկանում էր Գնունեաց տոհմին» (Աշխարհաբար թարգմանութիւն Փ. Բուզանդի պատմութեան, Երեւան 1947, էջ 317):

## 4. ԳՆՈՒՆԻ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԸ ԵՒ ԻՇԽԱՆՆԵՐԸ

Գնունեաց նախածանօթ ներկայացուցիչն է Գին: Խորենացիի աւանդութեան համաձայն ապրած է Վաղարշակ թագաւորին օրով եւ անկէ ընդունած նախարարական աստիճանը, վասն զի գինէր աշխարհաշէն արքային մատռուակել «յընտիր եւ համեղ գինեաց» (Պատմ., էջ 168): Խորենացին «գի-





նի»էն Գին անունն հանած է եւ Գին տակառապետ-նախարարը ստեղծած:

Գինի որդին — բայց աւելի հաւանական — Թոռն է, Գնէլ: Սա եւս տակառապետ է եւ կ'ապրի Տիգրան Մեծի օրով: Բարզափրան Ռշտունին զինքը հեծելազօրքով կ'առաքէ Երուսաղէմ «իբր ի պատճառս խաղաղութեան, բայց ի գաղտնիս օգնել Անտիոքայ»: Սակայն Հիւրկանոս խորագէտ քահանայապետը գուշակելով եղելութիւնն ու իսկութիւնը՝ Գնէլի թոյլ կու տայ միայն սակաւաթիւ բանակով քաղաքը մտնելու: Բայց Գնէլ նենգամիտ է եւ Հիւրկանոսը պատրելով ու խաբելով կը յղէ Բարզափրանի, որ խոստմնազանց գտնուելով՝ քահանայապետը Անտիոքոսի ձեռքը կը մատնէ: Գնէլ իր այս յաջողութենէն քաջալերուած — դարձեալ՝ Ռշտունի նախարարին սադրանքով — կը ձգտի Հերովդէս թագաւորն ալ որսալ եւ զինքը թակարդի մէջ ձգել, բայց այս անգամ յուսախաբ կ'ըլլայ: Ուստի Հիւրկանոսի գանձերն աւարելով եւ քանի մը յաղթութիւններ արձանագրելով իր բանակին հետ Հայաստան կը դառնայ՝ գոհ որ ընտիր գործակատարն եղած էր Տիգրանի եւ Բարզափրանի (Մ. Խոր., էջ 203. Յովհ. Կաթ. Պատմ. Հայոց, Թիֆլիս 1912, էջ 19. Զամչեան, Պատմ. Հայոց, Ա., էջ 258—260):

Յիշուած զոյգ Գնունիներու գոյութիւնն ու գործունէութիւնը այնքան արժէք ունին, որքան Խորենացիին այս շրջաններու ուրիշ

անձերու եւ դէպքերու մասին տուած ծանօթութիւններն ու աւանդութիւնները։ (Այս նկատմամբ մասով մը այլուր, երբ Ռշտունիներու մասին խօսիմ)։

Գնունիներու պատմականօրէն առաջին ստոյգ անձն է Աբ(բ)ա, որ Յուսիկ Նորընտիր կաթողիկոսին ուղեկից կ՚ըլլայ դէպի Կեսարիա, ուստի ապա խնդութեամբ կը վերադառնայ Հայաստան (Բուզանդ, էջ 40)։

Մեսրոպ Երէց Ներսէս Պարթեւի օրով երեք Գնունի նախարար կը յիշէ։ Մին է Պարգեւ, որ Արշակ Թագաւորին ուշադրութիւնը կը հրաւիրէ Ներսէս Պարթեւի վրայ՝ իբրեւ հայրապետական գահի արժանաւոր անձ (Պատմութիւն կամ Վարք Ներսէսի Պարթեւ հայրապետի, Զ. Սոփերք, Վենետիկ 1853, էջ 15—16)։ Մինչ Փաւստոսի անծանօթ է այս եւ նա կը ճանչնայ Պարգեւ Ամատունի (Պատմ., էջ 81)։

Ներսէսի հայրապետական ձեռնադրութեան դէպի Կեսարիա չքաղիր կ՚ըլլայ Մանէճ Գնունի (Զ. Սոփ., էջ 25), իսկ Բիւզանդինի տարբերութեամբ՝ անոր կ՚ընկերակցի Գնէլ (անդ, էջ 52)։ Այս երկուքն եւս Փաւստոսի անծանօթ են, նաեւ այն պարագան՝ թէ Արշակ «ի խնդիր ելանէ քաջ ազգին Մամիկոնէից... ապա երբեք գտանէ զնոսա յամուրս աշխարհին իւրեանց Հայոց, ընդ նոսին եւ զԳնունիքն եւ դարձուցանէր զնոսա ընդ իւր, վասն զի պատուականալ էին յընտանութենէ եւ ի զօրավարութենէ յամենայն գործոց ի ժա-

մանակին Տիրանայ թագաւորին» (անդ, էջ 16—17. հմմտ. վարը՝ Ռշտունեաց նախարարութիւնը):

Արշակ Բ. թագաւորին Տրդատ եղբօրը որդին է գժբախտ Գնէլ, որուն երակներուն մէջ Խորենացին գնունեան արիւն կը տեսնէ. «Գնելոյ բազում երէս առնել ընդ աւուրս յիւրում լերինն, որ Շահապիվան անուանեն, որ ի մայրենի հաւոյ իւրոյ Գնէլոյ Գնունւոյ հասեալ էր նմա» (Պատմ. Հայոց, էջ 442. հմմտ. Markwart, Südarmenien . . ., էջ 560—561): Պայծառ է որ Գնէլ անունը Խորենացին այս յերիւրանքի պատճառ կ'ըլլայ եւ երեւան կու գայ Գնէլ Գնունի մը, որ Մեսրոպի համաձայն Ներսէսի կ'ուղեկցի դէպի Բիւզանդիոն (հմմտ. վերը):

Երբ Հայաստան Յոյներու եւ Պարսիկներու միջեւ կը բաժնուի, Արշակ Գ. թագաւորը հրաժարելով պարսկական ընդարձակ բաժինէն՝ յունական անձուկ Հայաստանի մէջ կը հաստատուի: Թագաւորին օրինակին կը հետեւին նախարարներէն ոմանք: Անոնցմէ է Ատատ Գնունի, որ հակառակ պարսկական բաժինի Խոսրով Նորընտիր արքային հրաւէրին, հաւատարիմ կը մնայ Արշակի եւ պատիժի կ'ենթարկուի — զրկումովը հայրենի հողերու՝ «Վասն որոյ զժառանգութիւնս նոցա կալաւ Խոսրով յարքունիս հրամանաւ եւ ոչ եթող զկալուածս որդւոց ի հայր եւ զեղբօր յեղբայր» (Խոր., էջ 492): Թէ Գնունիները ե՛րբ եւ ի՛նչ պարագաներու տակ իրենց հողերուն

նորէն կը տիրանան՝ այդ աւանդուած չէ։ Սակայն հարկ է չեշտել, որ Բուզանդ եւ Ղազար, որոնց ծանօթ էր Խորենացին, եւ անոնց գրութիւնները իբրեւ աղբիւր կը գործածէր — թէեւ աղիկամի — այս ժամանակաշրջանի դէպքերը բաւական տարբեր կը նշանակեն եւ ուրիշ անձերու յիշատակութիւն կ'ընեն։

Ատատի Թոռը կը թուի ըլլալ Ատոմ Գնունի։ Սոյն տոհմին պարծանքներէն է եւ Վարդանանց շրջանի կարեւոր դէմքերէն։ Արի եւ գործօն, կրօնասէր եւ հայրենասէր։

Հայկական Սոփերքներու շարքին մէջ (հատոր ԺԹ.) կը հրատարակուի՝ «Վկայաբանութիւն սրբոյն Ատոմայ եւ որդւոյ իւրոյ եւ Վարսայ եւ Ներսեհի եւ Վարձուորի»։ Անոր համառօտ բովանդակութիւնն է. «(Ի) ժամանակս Յազկերտի ամբարշտի Պարսից թագաւորին ծագէր հաւատ քրիստոնէութեան ընդ ամենայն երկիր»։ Այս եղելութիւնն արեւապաշտ մոգերուն հաճելի չէր, ուստի եւ թագաւորին առջեւ կը դնեն մազդեզեան կրօնի մօտահաս կործանումը, որմէ սակայն կարելի է զերծանիլ՝ քրիստոնէութեան դէմ հալածանք սկսելով ու շարունակելով։ Եւ տուգի՝ «լինէր հալածումն մեծ»։ Յազկերտ իր հրամանովը Պարսկաստան ժամանող Հայերուն՝ նախարար մը կ'առաքէ հրովարտակով մը՝ «Կամիմք մեծաւ պատուով եւ ճոխութեամբ արձակել յաշխարհն ձեր... միայն թէ փութով հասանիցէք ի դուռն արքունի»։ Հայերը խնդրոյն էութեան թափան-

ցելով կը միարանին խաւարին դէմ մաքառել՝ «Քան առ ժամանակ մի վայելել ի մեղս»: Անոնց պարագլուխներն են՝ «Ատոմ Գնունի խըռովք ազատոք եւ տէր Մանաճիհր Ռշտունի խըռովք ազատոք», որոնք իրենց համամիտներու հետ կը փախչին Անձեւացեաց երկիրը, ուր ճգնաւոր մը անոնց մարտիրոսական պսակը կը նախատեսէ: Ատոմ եւս յատուկ տեսիլքով՝ նահատակութեան կը պատրաստուի: Հայ մանչի մը միջնորդութեամբ պարսիկ հետապնդող զինուորները Ատոմեաններու բնակավայրը կ՚իմանան: Բայց Հայերը անյապաղ ու անխռով ձայն կու տան գոչելով՝ «Զի կալէք» եւ դիմադրութեան հետամուտ կ՚ըլլան: Սակայն ուրիշ տեսիլք մը, որ ամէնուն նկատելի կ՚ըլլայ, զանոնք կը քաջալերէ «ի կատարումն» փութալ եւ «անանց լոյսն եւ անթառամ» պսակը ժառանգել: Ատոմ Գնունի «զսքանչելիս տեսիլ զորդեակն իւր առաջի արարեալ ի ժամ կատարմանն՝ զանգիտեալ ի մանկական տիոցն» կը տեսնէ իր ժառանգին արիական վախճանը եւ ապա միւս ընկերներուն հետ կը կնքէ քրիստոնէական հաւատքին ճշմարտութիւնը՝ արիւնո՛վ: Պարսիկ մը այս առթիւ քրիստոնեայ կ՚ըլլայ, մինչդեռ հայազգի մը ինքզինքը հոգիէ կեղծելով «վտարեցաւ» ինչպէս մէկը՝ «ի սրբոց Քառասնիցն»:

Վկայաբանութեան վերջաւորութեամբ կը յիշուին քաջասիրտ նահատակներու անունները՝ «Գլխաւորն՝ սուրբն Ատոմ որդւովն

իւրով յազգէն Գնունեաց, սուրբն Վարոս յՈստանէ, սուրբ Ներսէհ յԱրուանդունի տանէն, սուրբ Վարձաւոր եւ այլ եւս բազմութիւն սուրբ ընկերացն ընդ նոսա եւ առին զպսակս անապականս» (Սոփ. ԺԹ., Վենետիկ 1854, էջ 69—82)։

Վիեննայի Մխիթարեան Մատենադարանին Թ. 219 գրչագիր Յայսմաւուրքը սա խորագիրն ունի՝ «Վկայաբանութիւն սրբոց Ատովմեանց եւ որդւոց նոցին Վարսայ եւ Ներսէսի եւ Վարձաւորին[5]» (Տաշեան, Ցուց. Ա., էջ564), ուրեմն կերպով մը կարծես՝ Ատոմին երեք որդի կը վերագրէ։ Մինչդեռ Վենետիկեան Մխիթարեանց Մատենադարանին ԺԸ. եւ Ի. Յայսմաւուրքները Ատոմին միակ որդւոյն անունը Վարոս գիտեն (Հ. Յ. Թորոսեան, ի «Բազմավէպ» 1899, էջ 66, ծն. 5)։ Նոյնը կը հաստատէ եւ Վիենն. Մխիթարեանց Թ. 10 Յայսմաւուրքը՝ «Եւ սուրբ Ատոմ ունէր ընդ իւր որդի մի երիտասարդ հասակաւ փայլելուչ եւ գեղեցիկ տեսլեամբ, Վարոս անուն»։ Իսկ Սրուանձտեանց Արղնի Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանքին մէջ տեսած է Թ. 227 ձեռագիր Հաւաքածոյին մէջ Ատովմեանց վկայաբանութիւնը սա խորագրով՝ «Վկայաբանութիւն սրբոյն Ատովմայ եւ որդւոյն իւրոյ եւ Վարսակայ եւ Ներսէհի

[5] Սիւրմէեան Արտ. արքեպ. Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն Մանկունք եկեղեցւոյ եւ մասնաւորաց, Ա. հատ., Երուսաղէմ 1935, էջ 295 եւ էջ 334։ — Հմմտ. եւ Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուցակ, Բ., էջ 59։

եւ Վարձաւորին եւ նոցունց ընկերաց[6]» (Թո-րոս Աղբար, Բ., էջ 394):

Եղիշէ Ատոմ Գնունիի մասին հետեւեալ տեղեկութիւնները պահած է: Կը հաղորդէ՝ թէ Կարմիր Վարդան Մամիկոնեանի համախորհուրդ նախարարներու կողմէ բիւզանդական արքունիքը առաքուած պատգամաւորն է Ատոմ, որ հակառակ իր բուռն ջանքերուն մայրաքաղաքին մէջ որ եւ է յաջողութիւն չի կրնար ունենալ եւ շտապով կը վերադառնայ հայրենիք՝ Աւարայրի ճակատամարտին մասնակցելու համար (Եղիշէ, Պատմ. Վարդանանց, Վենետիկ 1893, էջ 130, 135): Թէ Վարդանի ո՛ր գումարտակին մէջ կը մաքառի, այդ Եղիշէ կը լռէ, բայց կը յիշէ թէ Տղմուտի պատերազմէն յետոյ բազմաթիւ նախարարներու հետ Ատոմ Պարսկաստան կը տարուի: Հոն արքայից արքային առջեւ — առանց ակնածութեան — Վասակ Սիւնի հաւատուրաց իշխանին դիմակը կը պատռէ, ապացուցանելով՝ թէ Վասակ՝ թէեւ բր–

---

[6] Բէյրութի մէջ Վեղարաւորներու փոքրին հայերէն ձեռագիրներուն մէջ կայ Կիրակոս Արեւելցիի Յայսմաւուրքէն — գրուած Վասիլ դպրի ձեռքով Սանփինոս քահանային խնդրանքով, Հայոց ՉԿԲ (1313) թուականին, Կոստանդին Կաթողիկոսի Օշին թագաւորի ժամանակ (թղ. 740ր)· ուր կայ՝ «Եւ որք նահատակեցանն են այսօրիկ՝ Սուրբն Ատոմ եւ որդի իւր յազգէն Գնունեաց: Վարս, յԱստան տանէ, Ներսեհ, յԱրւանթունի, Վարձաւոր եւ այլք ընդ նոսա...» (թղ. 5ա, ապա կը յիշուի Մանաճիհր Ռշտունիի նահատակութիւնը): — Այս փոքրին հայերէն ձեռագիրները ցուցակագրած եմ եւ կը յուսամ պատեհ առթիւ հրատարակել:

գինքը Պարսիկներու բարեկամ դաւանած է եւ անոնց շահերուն քինախնդիր, բայց իրականութեան մէջ ջանադիր եղած է Բիւզանդիոնի հետ լաւ յարաբերութիւն մշակելու: «Սա (Ատոմ) մատուցեալ յանդիմանէր գնա առաջի մեծի ատենին հրովարտական իւկ, զոր տուեալ էր նորա իւրով մատանեաւն» (անդ, էջ 251):

Ատոմ Պարսկաստան վշտաշատ օրեր բոլորելէ յետոյ՝ կը վերադառնայ Հայաստան (անդ, էջ 369), ուր անոր գուցէ կը սպասէր «փափկասուն» հայ տիկին մը եւ «կցորդ» կ'ըլլար անոր չարչարանքներուն (Եղիշէ, էջ 385—389):

Ղազար Փարպեցին Ատոմի Բիւզանդիոն պատգամաւորութիւնը, Աւարայրի մարտին մասնակցութիւնը, Վասակ Սիւնիի դիմագրկումը չի յիշատակեր, մանաւանդ թէ այն պարագաներէն մաս մը Վահան Ամատունիին կը վերագրէ: Հ. Վ. Հացունի «Խորհրդածութիւնք Եղիշէի Պատմութեան վրայ» իր գրութեամբը (Վենետիկ 1897) կը ճգնի հաստատել, թէ Եղիշէի տուած տեղեկութիւնները ճիշդ ըլլան: Մինչ ես կը միտիմ Գր. Տէր-Պօղոսեանի (Հանդէս Ամսօրեայ, 1895, էջ 111, էջ 131—132) եւ Բարգէն Վ. Կիւլէսէրեանի հետ (Եղիշէ, Վիեննա 1909, էջ 192—193) Ղազարի պատմածներուն հաւատք ընծայել: Վասն զի Եղիշէ (էջ 130) կ'արտայայտուի՝ «Յայնմ ժամանակի զմի ոմն ի մեծ նախարարացն, ի տոհմէն Գնունեաց ճեպով առաքե-

ցին յերկիրն արեւմտից»։ Ապա քիչ մը վերջ (էջ 132) կը գրէ՝ «Եւ իբրեւ յանդիման եղեն մեծի Թագաւորին»։ Ինչպէս կը տեսնուի յոգնակի գրուած է։ Հ. Հացունին եզակին ու յոգնակին կը ջանայ հաշտեցնել՝ պատճառաբանելով, որ Եղիշէն նախապէս գոհացած ըլլայ հրեշտակութեան միմիայն առաջնորդին նշանակումովը, որուն կը հակառակի Տէր Պօղոսեան (անդ, էջ 231—232)։

Կարծես Եղիշէն ինքն իրեն հետ իսկ կարելի չէ հաշտեցնել, երբ նկատենք՝ որ Ատոմ Բիւզանդիոն կ'երթայ. հոն Թէոդոս կայսրը ինքզինքը պատրաստակամ կը ցուցնէ Հայերու օժանդակելու, բայց 450 Յուլիս 29ին կը մեռնի։ Ապա գահ կը բարձրանայ Պուլքերիա — գահակից ունենալով Մարկիանոս — եւ 451 Փետրուարին անոնք իմաց կու տան Արեւաց արքային թէ՝ «Ձեռնթափ... (են) ի Հայոց աշխարհէ զօրու եւ զինու եւ ամենայն օգնականութեամբ» (Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ. հատ., Վիեննա 1852, էջ 541)։ Արդ հաւանական չի թուիր՝ որ Ատոմ Հայաստան արագահաս վերադարձած եւ Աւարայրի մարտին մասնակցած ըլլայ — Եղիշէի վկայութեան համաձայն։ Մինչդեռ Փարպեցին Ատոմ պատգամաւոր՝ եւ Աւարայրի վրայ մարտնչող չի գիտեր։ Նա գիտէ երեք պատգամաւոր՝ Վահան Ամատունի, Հմայեակ Մամիկոնեան եւ Մերուժան Արծրունի (էջ 197—198), որոնք թէեւ կը փութան — յետ իրենց առաքելու-

թեան անյաջողութեանը — «զոնեայ ի յուսոյ վրկութենէն չվրիպիլ... եւ ոչ ժամանեալ ի գործ ժամու պատերազմին... առ լերամբն որ կոչի Պարխար... դադարեցին» (անդ, էջ 233):

Հայ պատգամաւորութեան հարցը վերջին անգամ երեւան կու գայ Վասակ Սիւնիի դատավարութեան սեղանին առջեւ: Հոս Եղիշէի համաձայն Ատոմ Գնունի «մատուցեալ յանդիմանէր զնա առաջի մեծի ատենին հրովարտակաւն իսկ, զոր տուեալ էր նորա իւրով մատանեաւ (անդ, էջ 251): Մինչ Ղազար կը հաղորդէ՝ թէ Արշաւիր Կամսարական կը ներկայանայ եւ կը շեշտէ, թէ «Նամականի արարեալ առ կայսրն եւ զՎահան Ամատունի եւ զայլսն ի նախարարացն յիւրաքանչիւր տոհմէ ի Հոռոմս արձակեաց» (անդ, էջ 266): Այսպէս՝ երկու պատմագիրներն ալ իրենց պատգամաւորներուն վրայ հաստատուն կը կենան, բայց ինչպէս բոլինք աւելի ընդունելի է Ղազարի վկայութիւնը՝ նկատելով պատգամաւորութեան պարագաները, տեւողութիւնը եւ Աւարայրի ճակատին մասնակցութեան դժուարութիւնը[7]:

Փարպեցիին մօտ Ատոմի մասին բաւական շատ տեղեկութիւններ կը գտնուին: Կը յիշէ թէ՝ Վարդանանց ատեն «տէրն Գնու-

---

[7] Հմմտ. Հ. Ն. Ակինեանի յօդուածը «Կարմիրն Վարդան եւ Աւարայրի ճակատամարտը, Հանդէս Ամսօրեայ, 1951, էջ 97—154, մանաւանդ էջ 136): Հոն (էջ 138) Տաճատ Գնթունին նշանակուած է՝ Տաճատ Գնունի:

նեաց Ատոմ» կը մասնակցի Աշտիշատի ժողովին եւ ստորագրութիւնը կը դնէ Յազկերտի ուղղուած թուղթին: Իսկ Վարդան Մամիկոնեանի եռուգեռ գործունէութեան շրջանին եւ անոր մահէն վերջ անմիջնորդաբար տեղի ունեցած անցքերու եւ դէպքերու առեն Փարպեցին Ատոմ Գնունին չի յիշեր, այլ անոր տոհմէն՝ «Երանելին Վահան», որ Աւարայրի ճակատամարտին մէջ մարտիրոսական պսակով կը փառաւորուի (հմմտ. վարը եւ Եղիշէ՝ «յազգէն Գնունեաց մանուկն Վահան երիւք արամբք», էջ 225): Բայց կայանաւորուած նախարարներու շարքին կը հիւսէ նաեւ Ատոմի անունը (էջ 273): Իսկ Վահանեանց ժամանակ անոր մասին ստէպ կը խօսի: Ահա՛ Ատոմ իր Առաստոմ եղբօր հետ Վահան եւ Վասակ Մամիկոնեաններու եւ Սահակ Բագրատունիի կողքին՝ հաւատարիմ ընկեր է խաղաղութեան ժամերուն եւ պատերազմի արհաւիրքներուն մէջ: Ահա՛ Ատոմ Կուտակս գիւղի մէջ Վասակ Մամիկոնեանի հետ, թէեւ Ատրվշնասպէն անսպասելի յարձակում կը կրէ, սակայն Վասակի խոհեմութեամբը վտանգէն կը զերծանի եւ Ակոռիի մօտ 481ին աջ թեւը կը վարէ՝ օգնական ունենալով Առաստոմ եղբայրը: Պարսկական բանակը մինչ կը կարծէ թէ հայազունդ փոքրիկ ջոկատը «խելացնորեալ ի խնդիր մահու եկեալ է», Հայերը քաջաբար կը մաքառին եւ «Ատրվշնասպ անկեալ սատակէր»: Ատոմ եւ Առաստոմ ուխտադրուժ Գդեհոն Սիւնին,

որ Գարջոյլ մաղխազի նման թշնամիին կողմն անցած էր, կը հետապնդէին՝ ցանկանալով չար օրինակը ջնջել մա՛հով, բայց իրենց նետերը կը վրիպէին եւ գասայլիքը խոյս կու տայ։ Սակայն քաջամարտիկ Գնունիները ճակատա–վայրէն սիգապանծ կը մեկնին. Պատմագիրը կը վկայէ՝ «ի կողմանն Ատոմայ եւ Առաստո–մայ բազումք մեռանէին ի քաջ արանց»։

Մինչ Ակոռիի մէջ հայ բանակը յաղթու–թեամբ կը հրճուի, Վահան Մամիկոնեան սպարապետին գուժկան կը հասնի «Մեռա՛ւ քաջն Մամիկոնեան Վասակ... եւ արքն Գնու–նիք՝ Ատոմ եւ Առաստոմ եւ այլ ամենայն զօրքն Հայոց ի յանջակողմանս Ակոռոյ՝ տա–պաստ անկեալ դիակնացան»։ Դուինի մէջ բօթը բարեբաստօրէն դեռ լուր չտարածուած՝ մարտավայրէն աւետաւոր հրեշտակ մը կը ժամանէ։ Այդ՝ Ատոմի եղբայրը Առաստո՛մ է, «որ ձայն բարձեալ գոչելով ասէր՝ «Յաղ–թեաց զօրութիւն սուրբ խաչին եւ միշտ յաղթէ»։ Գնունի մը աւետաւոր կը դրկուէր, վասն զի Գնունիներու արժանիքը մեծ էր։

Միեւնոյն տարին (481) Ներսեհապատի ճակատին մէջ Ատոմ Գնունին Բաշխ Վահե–ւունի եւ Բարդէն Սիւնի ու Պապակ Պալունի նախարարներու հետ կը պատերազմի պարս–կական բանակին դէմ։ Առաստոմի անունը կա՛մ լռուած է եւ կա՛մ նա այդ կռուին մէջ մասնակցութիւն չունի։ Հուսկ ուրեմն Ատոմ — թէեւ ոչ անունով, այլ հաւանօրէն ինքն ըլլալու է՝ «Երանելեաւ տէրամբն Գնունեաց»

— կը գտնենք Ճարմանայնու (Կուր գետի մօտ) դաշտավայրին մէջ վահանեան պատերազմին մասնակցելով։ Այս անգամ Մամիկոնեան սպարապետին առաջնորդութեան տակ կը կառավարէ իր խումբը՝ թեւ ու թիկունք ունենալով Արշաւիր Կամսարականի երեք կորիւնները։ Այս պատերազմէն վերջ Փարպեցին Ատոմի եւ Առաստոմի անունները (հմմտ. էջ 135, 273, 395, 401—403, 418) այլ եւս չի յիշատակեր։ Եւ արդէն Ճարմանայնու պատերազմին լիակատար պատմութիւնը մեր ձեռքը չէ հասած։ Կը կարծեմ թէ այս ճակատին մէջ կամ անոր յաջորդած մասնական գուպարածներու մէջ Ատոմ, գուցէ եւ Առաստոմ՝ Վասակ Մամիկոնեանի եւ Սահակ Բագրատունիի հետ նահատակուած ըլլան։ Եւ ա՛յդ է պատճառը, որ Փարպեցին Ատոմ «երանելի» կը կոչէ։ Պատմագիրը ուզա՛ծ է եւ գրա՛ծ սոյն ճակատամարտին մէջ նահատակուած մարտիկներու անունները՝ «Եւ կատարեցան յաւուրն եւ անուանքն են այսոքիկ...» (անդ, էջ 439)։ Եւ սակայն չկան անունները եւ յայտնի կը տեսնուի որ պակաս կայ — թուղթ հանուած է եւ կամ ինկած է։

Աւասիկ Ատոմ Գնունիի մասին հասած տեղեկութիւնները՝ քաղուած Ատովմեանց վկայաբանութենէն եւ Եղիշէի ու Ղազարի Պատմութիւններէն։

Արդ հարց կը ծագի։ Այս բոլոր տեղեկութիւնները մէ՞կ Ատոմի մասին են, թէ

պէտք է զոյգ Ատոմներ ենթադրել կամ ընդունիլ:

Հ. Ջամչեան (Պատմ. Հայոց, Բ., էջ 15, 21) նախ իրարու ազգական կամ տոհմակից երկու Ատոմ կը զանազանէ, մին՝ Վկայարանութեան մէջ յիշատակուած նահատակ Ատոմն է, իսկ միւսը՝ Եղիշէի եւ Ղազարի յիշատակած Ատոմ Գնունին, որ Վարդանի եւ Վահանի դրօշներու տակ արիաբար կը կռուի՝ հետապնդելով միեւնոյն քաղաքականութիւնը՝ առաջնորդուած կրօնքէ: Սակայն այլուր կը մտածէ երկու Ատոմներու մէկ անձ ըլլալու մասին (անդ, էջ 416):

Հ. Յ. Թորոսեան «Բազմավէպ»ի մէջ (1899, էջ 66, 396 եւ 1900, էջ 102) «Ատոմեանց նահատակութեան ժամանակն եւ այլ հանգամանք» խորագրուած յօդուածին մէջ հետեւեալ պատճառներով կը ցուցնէ թէ՝ «Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներու մէջ յիշուած Ատոմ Գնունին չէր կարող միեւնոյն անձն ըլլալ, այլ երկու ուրիշ անձինք են»:

Ա. 450ին կը յիշուի Ատոմ Գնունին իբրեւ «մի ոմն ի մեծ նախարարացն» որ կարեւոր պարագաներու մէջ փափուկ պաշտօնով մը — պատգամաւորութեամբ — կայսեր կը ղրկուի եւ այս՝ գուշակել կու տայ «ոչ միայն Ատոմայ պատուաւոր նախարարական տոհմէ լինելը, բարուց ազնուականութիւնը եւ գործունէութիւնը, այլ եւ անշուշտ տիոց հասունութիւնը, որով չէր կարող նուազ քան երես-

նամեայ հասակի մէջ ըլլալ» (Բազմ. 1899, էջ 399)։ Ապա Աւարայրի ճակատին կը մասնակցի, Պարսկաստան կը տարուի եւ տարիներ յետոյ կը դառնայ «իր բնիկ գաւառը ի տարաժամ հասակի խամրած եւ ծերացած գրեթէ»։ Եւ յետոյ՝ «մնացած օրերը առանձնութեան եւ հանդարտութեան մէջ անցուց, ինչպէս ըրին Բարդէն Սիւնի, Առնակ Ամատունի եւ այլք» (անդ, էջ 399)։ «Արդ, կը հարցնէ Հ. Թորոսեան «Ի՞նչպէս կարելի էր յետ գրեթէ 20 տարիներու՝ նա զէնք առնուր դարձեալ եւ պատերազմի դաշտը իջնէր Վահանեանց հետ, մօտ եօթանասնամեայ հասակի մէջ, մինչ պատմիչն (Փարպեցի) կը ներկայացնէ մեզ Վահանեանց զինակից Ատոմը բոլորովին երիտասարդական աշխուժիւք լի եւ կրակոտ։ Ըստ իս շատ դժուարին կ՚երեւի այդ, բոլորովին անկարելի չըսելու համար» (անդ, էջ 399)։

Հ. Թորոսեանի այս վարկածը հաւանական չէ կարելի նկատել։ Ատոմի երբեւ պատգամաւոր բիւզանդական արքունիքն առաքումը եւ միանգամայն Աւարայրի պատերազմի մասնակցութիւնը Եղիշէի պատմած յարակից դէպքերով՝ դժուարին է ընդունիլ, ինչպէս վերը ակնարկեցի։ Աւարայրի պատերազմի անոր մասնակցութիւնը Ղազար չի յիշեր եւ Գնունիներէն Վահանի անունը կու տայ։ Իսկ հայ պատուիրակութեան մէջ անոր անունը չի գիտեր, բայց զինքը ներկայ կը դնէ Աշտիշատի ժողովին (հմմտ. վերը)։ Այս ա–

մէջն նկատի ունենալով՝ կարելի է եզրակացնել, որ Ատոմ կրնար Աշտիշատի ժողովքին «իր վառվռուն երիտասարդական հասակին մէջ» մասնակցիլ, որ Հ. Թորոսեանի համաձայն կրնայ քսանէն երեսուն տարիներու մէջ հասկցուիլ: Աշտիշատի ժողովի գումարումէն — 449 — մինչեւ Ճարմանայու պատերազմին վերջը — 482 (Յուլիս–Օգոստոս, Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզ. Պատմ., Բ., էջ 55) ունինք 33 տարուայ անջրպետ մը: Եթէ Հ. Թորոսեանի եւ մեր վարկածին համաձայն Ատոմ Վարդանի առաջին ձեռնարկներուն 20—30ամեայ նախարար էր, այն ատեն Վահանեան օրերուն կրնար իբրեւ 50—60ամեայ՝ գործօն անձ ըլլալ — ինչպէս Բաջն Վարդան (հմմտ. Բ. Վ. Կիւլէսէրեան, Եղիշէ, Վիեննա 1909, էջ 348) — եւ ոչ թէ «խամրած ծերուկ մը»: Այս կարծիքը հաստատելու կու գայ նոյն ինքն Եղիշէ, երբ Աւարայրեան պատերազմին մասնակից կը դնէ Վահան Գնունին, որ «մանուկ» էր: Մանուկ եղբօր մը գուցէ երէց եղբայրը՝ կրնար վերոյգրեալ տարիքն ունենալ: Եւ անոնց վերջնօղակը կը կազմէ Առաստոմ, որ Ղազարի մօտ այնպէս եռանդուն եւ կրակոտ կ'երեւայ:

Հ. Թորոսեանի երրորդ ապացոյցն է. «Եթէ Վահանի ընկեր Ատոմ նոյն էր Վարդանի ընկեր Ատոմի հետ, այն ատեն առաջնոյն բանակին մէջ պէտք էր առաջնակարգ դեր կատարել եւ ոչ երկրորդական»:

Կ՚ընդունիմ, որ Ատոմ՝ Վահանեան ապստամբութիւններու մէջ կարծես երկրորդական դեր կամ պաշտօն կը ստանձնէ, սակայն՝ ոչ միշտ: Ահա Ակոռիի քով աջակողմեան բանակին գլուխն է եւ Ճարմանայնու դաշտավայրին վրայ Վահանի աջ բազուկն է:

Հ. Թորոսեանի երրորդ ապացոյն է՝ Վահան Մամիկոնեանի ընկերը Ատոմ «Երբեք չի յիշուիր առանց իր Առոստոմ եղբօր, մինչ Վարդանի ընկերը Ատոմ միշտ առանձին կը յիշուի»: Չորրորդ ապացոյցն է՝ Ղազար Ատոմի գովեստ ու պատուանուն չի տար, մինչ այդ ընելու էր. եթէ միեւնոյն Ատոմը Վարդանի եւ Վահանի գործակից եւ միթէ նա խոստովանող չէ՞ր»: Վերջին ապացոյցն է՝ Պարսկաստան գացող կապեալ նախարարներէն բաց ի երեք մանկագոյններէն, — Բարգէն, Մուշեղ ու Ներսեհ — ոչ ոք Վահանեան մեծագործութիւններու կը մասնակցի. արդէն ննջած ըլլալով Գիւտ Կաթ.ի օրով (482—483): Հետեւաբար այդ ատեն վախճանած էր նաեւ առաջին Ատոմ, որ կապուած նախարարներու մէջ տարիքով երիցագոյնն էր: «Ապա ուրեմն Վահանեանց նիզակակից Ատոմ Գնունին նոյն չէր առաջնոյն հետ, այլ ուրիշ անձն, եղբայր Առաստոմի, անշուշտ մերձաւոր ազգական եւ յաջորդ առաջնոյն յիշխանութեան Գնունեաց տոհմին, ինչպէս կ՚իմանանք Փարպեցւոյ վկայութենէն: Եւ այս երկրորդ Ատոմ Գնունին է, ըստ իս, որ իր ընկերօք նահատակուեր է ի Պարսից, եւ որոնք կը տօնուին

*մեր մէջ Ատոմեանց զօրավարաց կոչմամբ»* (*Բազմ.* 1899, *էջ* 399—400)։

*Այս ապացոյցները դէմ կարելի է առարկել, թէ Ատոմ անգամ մը առանձին յիշուած է եւ Ղազար գիրքն ալ թէեւ մէկ անգամ «երանելի» որակած է եւ այն՝ իր մարտիրոսական օրհասէն յառաջ* (*էջ* 434)։ *Դարձեալ թէ գերի վարուող եւ վերադարձող նախարարներէն ոմանք, ինչպէս Հ. Թորոսեան կը հաստատէ, ապրած ու գործած են Վահանի օրով — այսպէս՝ Բարգէն։ Արդ ինչո՞ւ առնցմէ մէկն ալ չըլլայ Ատոմ, երբ անոնցմէ մին՝ Վարձ, Մեծ. Հօր համաձայն, Ատոմի հետ նահատակուած է։*

*Մինչ կը դժուարիմ Հ. Թորոսեանի հետ երկու Ատոմ*[8] *ընդունելու, համամիտ եմ անոր՝ թէ Փարպեցիին եւ Ատոմեանց վկայաբանութեան մէջ յիշուած Ատոմ Գնունիները մէկ անձ են, ընկեր Վահան Մամիկոնեանի.* ա. *Երկուքին մէջ ալ գլխաւոր անձը Ատոմ կը ներկայանայ միեւնոյն նկարագրով.* բ. *Գնունեաց տոհմէն է եւ տէր.* գ. *Փարպեցիի մօտ Ատոմ անբաժին է իր Առաստոմ եղբօրմէն, իսկ վկայաբանութեան մէջ որդիէն։ Առաստոմ կրնար եւ որդի կոչուիլ իբրեւ կրտսերա—*

---

[8] *Հ. Աճառեան երկու Ատոմ Գնունի կ՚ընդունի, մէկը՝ նահատակ եւ միւսը մասնակից* Վարդանանց *եւ* Վահանեանց *պատերազմներու* (*Հայոց անձնանունների բառարան, Ա., Երեւան* 1942, *էջ* 254)։

գոյն եղբայր[9]. դ. Ներսեհ Երուանդունին ընկերն է Ատոմի եւ Վահանի. ե. «Եղիշէ Կամսարականաց մէջ կը յիշէ զոմն Վարձ, զոր Փարպեցին կը կոչէ Վարձայ, որոնցմէ առաջինն կը յիշեցնէ մեզի «զՎարս եւ երկրորդն զՎարձաւոր (ընկերք Ատոմայ)». Հաւանական չէ՞ որ Վարս ոստանիկ նոյն ըլլի Եղիշէի Վարձ եւ Փարպեցւոյ Վարձայ կոչուած Կամսարականին հետ... Վարս յՈստան տանէ եւ Եղիշէի Վարձ յազգէն Կամսարականաց (Հմմտ. Կողեան, Կամսարականները, էջ 101), կրնան դիւրաւ միաբանիլ իրարու հետ եւ միեւնոյն անձն ըլլալ». զ. Ատոմ՝ Վասակ Մամիկոնեանի նահատակութեան վայրէն խոյս կու տայ իր ընկերներովը եւ Հայոց աշխարհն անցնելով կը նահատակուի: Ղազար կը յիշէ Ատոմի մինչեւ հալածումն ու փախուստը եւ ապա վկայաբանութիւնն է որ կը խօսի (Բազմ. 1900, էջ 202—206):

Թէ Վկայաբանութեան եւ Ղազարի Ատոմ Գնունիները միեւնոյն անձն են կարելի չէ ցուցնել զոյգ պատմագիրներու լռութենէն եւ չէ կարելի Հ. Աւգերեանի արդարացումն ընդունիլ թէ՝ «Առանձին միոյ գաւառի պատմութիւն է» եւ այս պատճառով լռած (Վարք եւ Վկայաբանութիւն Սրբոց, Բ., Վենետիկ 1811, էջ 66—89՝ «Վկայաբանութիւն Ատո-

[9] Կարելի է նաեւ խորհիլ թէ Ատոմ իր Վարս որդւոյն հետ նահատակուած ըլլայ, իսկ թէ Ատոմի վերջն ինչ եղած է՝ կ'անգիտանանք: — Չեմ կարծեր թէ Վարս՝ Ատոմ անուան աղաւաղումն ըլլայ:

մեանց առաջնոց եւ վերջնոց»)։ Մասնական քանի՜ քանի՜ դէպքեր ու խնդիրներ հայ մատենագիրներու գրչի նիւթ եղած են։

Ինձ կը թուի թէ Վկայաբանութիւնը շարունակութիւնն է Ղազարի պատմութեան կորսուած մասին ու հատուածին։ Կարծես սոյն պակսած կտորը հանուած է եւ անով վկայաբանութիւնը հիւսուած ըլլայ։ Ղազար կը գրէ՝ «Ընտրութեան ցանկացողք եղեն եւ արժանիք ընդ սրբոյ ասպետին Սահակայ եւ ընդ սրբոյ քաջին Վասակայ Մամիկոնենի եւ կատարեցան աւուրն եւ անուանք են այսոքիկ...» (էջ 439)։ Մինչ վկայաբանութիւնը կը դնէ՝ «Արդ որք յայսմ տեղւոջ հանդիպեալք կատարեցան են այսոքիկ՝ գլխաւորն սուրբն Ատոմ որդւովն իւրով յազգէն Գնունեաց, սուրբն Վարսայ յՌստան տանէ, սուրբ Ներսեհ յԱրուանթունի տանէ, սուրբն Վարձաւոր եւ այլ բազմութիւն սուրբ ընկերացն, որք նահատակեցան ընդ նոսա»։

Բայց պէտք է խոստովանիլ թէ կան քանի մը կէտեր, որոնք մեր վարկածը կը տկարացնեն. այսպէս՝ Ղազարի մօտ նահատակուած պիտի նշանակուէր Ատոմի Առաստոմ եղբայրը, մինչ վկայաբանութեան մէջ անոր որդին յիշուած է։ Դէպքը տեղի կ՚ունենայ Պերոզ Թագաւորի օրով, իսկ վկայաբանութեան մէջ կը գրուի «ի ժամանակս Յազկերտի»։ Գուցէ կարելի ըլլայ Հ. Թորոսեանի հետ ընդունիլ՝ թէ Ատոմի կրտսեր եղբայրը իբրեւ որդի նշանակուած ըլլայ եւ Պերոզ

իբրեւ հալածող անուանուած է՝ Յազկերտ (հմմտ. վերը)։

Այս հարցը իր խակական լուծումը կրնայ գտնել, երբ Ղ. Փարպեցիին ամբողջական եւ լաւագոյն բնագիրը (Պատմութեան) գտնուի եւ անոր մէջ տեսնուի ՀԴ. հատուածին վերջին մասը։

Պատշաճ է դիտել՝ որ Ստովմեանց վկայաբանութիւնը նմանութիւն ունի չորս գրութիւններու հետ։ Ասոնք են՝ Սեբաստիայի Քառասուն Մանկանց վկայաբանութիւնը (Պարսիկի մը քրիստոնեայ ըլլալն եւ Հայ քրիստոնեայի մը ինքզինքը հովիւ կեղծելը), Սահակ-Համազասպ Արծրունիներու վկայաբանութիւնը (Սահակի եւ Ատոմի որդւոյն նահատակութեան պարագաները (ԺԲ. Սոփերք, էջ 76, ԺԹ. Սոփերք, էջ 79), Ղազար Փարպեցիի պատմութիւնը (հմմտ. հտծ. ՀԴ. եւ ԺԹ. Սոփ., էջ 76), բայց մանաւանդ Եղիշէի պատմութիւնը (հմմտ. էջ 12, 29, 30, 31 եւ ԺԲ. Սոփ., էջ 70)։ Մանրամասնութիւններու իջնալու եւ յառաջբերութիւններու հարկ չկայ։

Յաւելում եւ այս։ Միրախորեան (Նկարագրական Ուղղեւորութիւն..., Կ. Պ. 1884, Ա., էջ 131, 143 եւ 144) կը գրէ թէ իր ճամբորդութեան միջոցին կը հանդիպի Իշխանագոմ եւ հոն տապանաքարերու մէջ անընթեռնելի թուականով հետեւեալ յիշատակագրութեան կը պատահի. «Է Ոգր Աստ սպանաւ մեծն ի նախարարս, որոյ անունն Ատում»․ ու

կ՚ըսէ «հաւանական է որ Եղիշէ պատմարանին յիշած Գնդունեաց (կարդալ՝ Գնունեաց) տոհմի Ատոմն եղած ըլլի»: Ապա կ՚աւանդէ թէ Ոչխրանց գիւղի մօտերը կայ սուրբ Ատոմայ մատուռ մը — կիսակործան — ուր Ս. Ատոմի անունով ոչխար կը մորթեն եւ թէ ժողովուրդին բերնէն քաղած է հետեւեալ աւանդութիւնը. Այժմեան վարի Ոչխրանց գիւղի մէջ նահատակուած են Ատոմեանք (Մանաձիհր Ռշտունի) պարսկական եւ արեւպաշտական մոլեկրօնութեան առջեւ եւ կ՚աւանդուի թէ այն ատեն ոչխարի նման մորթուած ըլլալուն պատճառաւ գիւղիս անունն մնաց Ոչխրանց. այս առթիւ Ս. Ատոմեայ համար կ՚ըսուի թէ՝ այն ըլրակի գլխէն, ուր յանուն իւր մատուռ շինուած է, Թաշկինակի մէջ մի մեծ քար դրած՝ պարսատիկի նման դարձնելով նետած է առ Պարսիկ թշնամիս դէպի հարաւ. այս պատճառաւ նոյն քար կը կոչուի Այնխիքար» (Թաշկինակի քար):

Այսքան Ատոմի մասին: Անոր եղբօր Առոստոմի նկատմամբ վերոյիշեալներէն զատ ուրիշ տեղեկութիւն չկայ: Նա Ատոմի ցաւին ու փառքին դրեթէ միշտ մասնակից է ու հաղորդ, սակայն ձարմայնանու կուին մէջ անոր անուան բացակայութիւնը կամ յաւթիւնը ուշադրութիւն կը գրաւէ:

Զեմ կրնար առուգարկես հաստատել՝ թէ անոնց եղբայրն ըլլայ Վահան Գնունին, որ թէեւ մանկահասակ՝ Աւարայրի պատերազմի մէջ մարտիրոսական պսակին կ՚արժանանայ:

«Ստացեալ զհաւատոյ վահան, յուսոյն զրահիւք ծածկեալ զփրկականն սաղաւարտ ի գլուխ եդեալ՝ զնշան խաչին» (Շարական Վարդանանց)։

Այս պատկառելի դէմքերէն յետոյ Գնունիներու զարմէն ծանօթ է Գնէլ, որ Բաբգէն Կաթ.ի օրով (490—516) Պարսկաստան գրուած թղթին մէջ իբրեւ «Տէր Գնունեաց» կը յիշուի (Գիրք Թղթոց, էջ 42)։ Արդեօք յախո՞ւռն է անոր հետ նոյնացնել Գնեալ, որ Ներսէս Կաթ. Բագրեւանդացիի ժամանակ (547—557) համախմբուած եկեղեցականներու եւ նախարարներու մէջ է եւ անոնց հետ կը կնքէ «Միաբանութեան ուխտ» (անդ, էջ 72)։ Ապա երեւան կու գայ Մժեժ կամ Մեժիժ Գնունի, որ Հոները կը յաղթէ եւ Պարսիկներէն մարզպան կ՚անուանուի։ Ասողիկի (էջ 82, հմմտ. եւ Տաշեան, Ցուցակ, էջ 172), Կիրակոս Գանձակեցիի (Պատմ. Հայոց, Վենետիկ 1865, էջ 23) եւ Սամուէլ Անեցիի (Ժամանակագրութիւն, Վաղարշապատ 1893, էջ 82) համաձայն 30 տարի այն պաշտօնը կը վարէ, բայց անոր կառավարութեան շրջան կը տրուի — ընդհանրապէս 517—535 (հմմտ. Ազգապատում, Ա., Կ. Պոլիս 1912, էջ 519. կարեւոր՝ Grousset R., Histoire de l'Arménie, Paris 1947, էջ 237—238)։ Յովհաննէս Կաթ.ի մօտ Մժէժի անունը անյիշատակ կը մնայ։ Հ. Հմ. Համբարեան Մժէժ Գնունիի երկարատեւ մարզպանութիւնը (նոյն իսկ գոյութիւնը) երկրայա-

կան կը գտնէ, նկատելով որ Ներսէս Բ. Կաթողիկոսի Դուինի մէջ գումարած ժողովին վաւերական արձանագրութեան մէջ անոր անունը չկայ, դարձեալ որ այս շրջաններուն (509—550) պարսկական մարզպանները կարճատեւ կառավարութիւն կ՚ունենային — ընդհանրապէս եւ թէ Յովհաննէս Կաթողիկոս անոր անունը մեզի չէ աւանդած (Հմմտ. Հանդէս Ամսօրեայ, 1912, էջ 532): Ստուգիւ նշանակալից կարելի է համարիլ Մժէժի անունին բացակայութիւնը Դուինի ժողովին մէջ: Ի՞նչպէս կրնար անոր անունը անտեսուիլ, երբ անդամներու անուններն բծախնդրօրէն կը յիշուին եւ դիտողութիւն կ՚ըլլայ թէ՝ «ոչ ոք արտաքոյ մնաց յաշխարհականաց ի յայս կամաւոր գործոյ» եւ Գնունիներէն Գնեալի անունը կը տրուի (Գիրք Թղթոց, էջ 74):

Բիւզանդիոնի Հերակլ կայսրը Յունահայաստանի սահմանները գծելէ վերջ իբրեւ կառավարիչ իր բաժինին «ի Հայաստան երկրէ (Սեբէոս, Պատմ. ի Հերակլ, Թիֆլիս 1913, էջ 101) կ՚առաքէ Մժէժ Գնունի[10] մը, որ Պարսիկներու դէմ անվեհեր կը կռուի եւ Եզր կաթողիկոսը կը համոզէ Յոյներու հետ կրօնական հաղորդութեան մէջ մտնելու, իսկ Պարսկահայաստանի հողերը կը կառավարէ Վարազտիրոց Բագրատունի ասպետը: Այս

[10] Աղաւաղուած՝ Մաժէժ Գնունի. հմմտ. Հ. Յ. Տաշեան, Մայր Ցուց. Վիենն. Մխիթ. ի Վիեննա, էջ 114:

պարագան Մժէժին հաճելի չ՚ըլլար: Եւ կը սկսի՝ «առնել չարախօսութիւն առ Ռոստոմայ իշխանին, որ յԱտրպատական յաշխարհին»: Հետեւա՞նքը. Վարազտիրոց հայածանքի ենթարկուելով կ՚ապաստանի յունական արքունիքը, ուր Հերակղի դէմ դաւադրութիւն մը կը նիւթուի: Մասնակցողներէն է նաեւ Դաւիթ Սահառունին, զոր կայսեր հաւատարիմ Մժէժ Գնունին կալանաւորելով «առաքէ ի պաղատն»: Սակայն Դաւիթ ճամբորդութեան մէջտեղին կը յաջողի բեկանել շղթաները եւ հետեւակ պահապանները սպաննել: Ապա հայկական բանակը սիրաշահելով Մժէժի վրայ գրոհ կու տայ եւ զինքը իր Վարազ-Գնէլ եղբօրը հետ 635ին չարամահ կը մեռցնէ (Սեբէոս, էջ 101—102. Ալիշան, Տիրակ, էջ 142):

Յովհաննէս կաթողիկոսին Մժէժի այս քաղաքական գործունէութիւնը անծանօթ կը թուի եւ կամ կը գոհանայ անոր կրօնական գործունէութիւնը — Եգրի Յոյներու հետ յարաբերութեան հարցը — հաղորդելով (Պատմ., էջ 44—45): Իսկ Վարդան կը գրէ. «Յայսմ ժամանակի կարգէ (Հերակղ) զօրավար Հայոց զՄժէժ զոր սպաննեալ Դաւիթ Սահառունի ինքն լինի իշխան» (Պատմ., էջ 62): Ծանօթ է մեզի Մժէժ անուն թիկնեղ զօրական մը, որ Հերակղի թոռին Կոստանդ Բ.ի եղերական մահէն — այս է՝ բաղնիքի ատեն Անդրէաս ծառան ջուր լեցնելու անօթը անոր գլխուն ուժգնօրէն զարնելով զանիկա մեռցնելէն

վերջը՝ գինուորներէ եւ անոնց առաջնորդներէ հակառակ իր բացորոշ կամքին կայսր կը հռչակուի, բայց ինչպէս Հ. Ալիշան կը գրէ՝ «Եւ ոչ մի տարի ակամայ կայսրութեան անունը կրելով Թագին հետ իր թագագանգուր գլուխն ալ կորոյս, զոր Սիրակուսայէն խառ–րեցին ի Կ. Պոլիս առ որդին Կոստանդեայ Կոստանդին Դ.» (Յուշիկք Հայրենեաց, Բ., էջ 335):

Հ. Զամչեան պատմագիրներու այլազան տեղեկութիւնները կը ջանայ միաբանել ըսելով՝ «Պարտ է ասել թէ երկու էին Մժէժ, առաջինն կարգեալ ի Պարսից մարզպան Հայոց յաւուրս Ղեւոնդեայ կաթողիկոսի եւ Ներսէսի Աշտարակեցւոյ, իսկ երկրորդն էր ի ծննդոց թոռին նորա, որ եւ կարգեցաւ ի Հերակլէ զօրավար եւ իշխան Հայոց եղելոց ի բաժնին Յունաց յաւուրս Եզրի եւ սա յետոյ ընտրեցաւ կայսր» (Պատմ. Հայոց, Բ., էջ 325 եւ 528. Հմմտ. Օրմանեան Մաղ. արքեպ., Ազգապատում, Կ. Պ. 1912 եւ Երուսաղէմ, 1927, Ա., էջ 5, 9, 703 եւ Գ., էջ ԾՂԳ. յաւելուած):

Մժէժ Ա.ի մասին արդէն արտայայտուեցայ, իսկ երկրորդին նկատմամբ միթէ զարմանալի չէ՞ որ հայ պատմագիրներու մօտ որ եւ է ակնարկութիւն չկայ անոր կայսրութեան մասին: Դարձեալ՝ ի՞նչպէս միաբանել պատմութեան թատերավայրերը եւ թուականները: Մժէժ կայսրը կը սպաննուի Արեւմուտք՝ Սիրակուսա եւ Մժէժ զօրավարը

Արեւելքի մէջ՝ յունական Հայաստանի մէջ եւ մին 635—636ին ու միւսը՝ 668ին: Այնպէս կ'երեւայ թէ պէտք է զանազանել երեք Մժէժ, մին՝ մարզպան, միւսը՝ կիւրապաղատ եւ մէկալը՝ կայսր:

Շապուհ Բագրատունիին վերագրուած պատմութեան մէջ կը յիշուի ի տանէն Գնունեաց Գորգ Զափրան անուն անձ մը որ ծառան է Գրիգոր Դէրէնի: Անո՛ր հետ կ'ունենայ երջանիկ եւ ուրախ օրեր, անոր հետ կ'ուտէ ու կը խմէ մեծածախս սեղանէն: Նաեւ շռայլութեան հետեւանքով անո՛ր հետ կ'աղքատանայ: Սակայն ցաւերու օրերու մէջ, զրկանքներու ժամանակ Զափրան Գրիգոր Դէրէնի հաւատարիմ ծառան կը մնայ: Երկուքն ալ իրենց չքաւորութեան շրջանին, թէեւ առանց գիտնալու, սակայն անձնազոհութեամբ կը հիւրընկալեն «հալածական արքայն Բաբելացւոց»: Որ երբ Բաղդատի իր գահին վերստին կը տիրանայ եւ հոն Դէրէնն ու Զափրանը իբրեւ պանդուխտ կը գտնէ, զանոնք սիրով ու մեծարանքով իր քովը կ'առնէ: Յետոյ Բաբելացիներու թագաւորը զանոնք զինուորներով Վասպուրական կ'առաքէ գրաւելու ժառանգական հողերը, որոնց մէջ է Վան: Երկու հաւատարիմները կը հասնին «ի դաշտն Դաստակնէ»․ եւ մինչ Դէրէն իր երկրին տիրացած՝ իր Գագիկ եւ Համազասպ եղբայրներու հետ բանակցութեան մէջ է, Զափրան ճամբայ կը հանէ՝ յորդորելով «Գնա՛յ դու եւ տիրացիր բերդերոյն իմոյ ի Վանայ եւ Նստո՛յ

գորդին քոյ զՎարդեվան եւ գիտացո՛յ ինձ»: Գէորգ Զաֆրան անոր հպատակելով եւ Վան քաղաքը գրաւելով զայն իր Վարդեվան կամ Վարդան որդւոյն կը յանձնէ. «Եւ գնաց Զաֆրան եւ մտաւ ի Վան եւ էառ զբերդերն եւ ետ ի որդին իւր ի Վարդան, նոյնպէս եւ բերդն Սեւանայ էառ եւ ետ ի քուրորդին իւր եւ գնկան ամուրն ի հօրեղբօրն իւր եւ զՄարանդակայ ի փեսայն իւր, զՇմաւոնի եւ զԹոռորդ ձորն յԱրճախի տվել ի զերին (թէ ի քեռի՞ն) իւր: Եւ զայս ամենայն այսպէս արար եւ ապա յղարկեաց առ պարոնն իւր Դիրենն» (Պատմութիւն, Էջմիածին 1921, էջ 40—48):

Թէ ասկէ վերջ Զաֆրան եւ Վարդան ի՛նչ կ՚ընեն եւ ո՛րքան կ՚ապրին՝ լռուած է:

Ծապուհի այս տեղեկութիւններուն ալ կարելի է մերձեցնել Հ. Ակինեանի այն եզրակացութիւնը, որ անոր ամբողջ գործին համար հանուած է. «Նկատելով պատմութեանս բովանդակութիւնը պէտք է ըսել, թէ հեղինակն կը սիրէ աւելի զրուցախառն դէպքերու նկարագրութիւնն տալ, քան իսկապէս պատմութիւն մը յօրինել: Այս տեղ ամփոփուած են հայ պատմագիրներէն եւ աւանդութենէն կէս պատմական եւ կէս առասպելական նկարագրով դէպքեր...: Իբրեւ աղբիւր պատմութեան համար որ եւ իցէ արժէք չունի անիկա, բայց ընտիր աղբիւր է աշխարհագրութեան եւ ազգագրութեան համար» (Մատենագրական հետազօտութիւններ, քննա-

թիւն եւ բնագիր, Ա., Վիեննա 1922, էջ 208—209):

Բագրեւանդի ահեղ ճակատին մէջ (775) քաջաբար մաքառող է Վահան Դաշնակ Գնունի, որ սակայն Սմբատ ու Սահակ Բագրատունիներու եւ Մուշեղ ու Մանուէլ Մամիկոնեաններու հետ կը մեռնի (Ղեւոնդ Երէց, Պատմ., էջ 151, Լէօ, Պատմ. Հայոց, Երեւան 1947, էջ 407):

Գնունիները հոս կորսնցնելով արին Վահան՝ կը սկսին տարակուսիլ իրենց կեանքին ու ազգատոհմին շարունակութեանը վրայ, որովհետեւ Իսմայէլացիները օրէ օր կը զօրանային: Ուստի դիմում կը կատարեն Աշոտ Բագրատունիին. «Որոյ երթեալ հազար արամբ յԱղիովիտ գաւառ եւ առ ինքն գումարեալ զամենայն ազգն ախիւ իւրեանց տանի բնակեցուցանէ ի Տայս» (Վարդան, Պատմ. Հայոց, էջ 77. Լէօ, անդ, էջ 426):

Թէ Գնունիներն ո՛րքան ատեն Տայքի մէջ կը բնակին եւ հոն ի՛նչ գործունէութիւն կ՚ունենան՝ այդ մթութեան քողով ծածկուած է: Սակայն անոնցմէ գոնէ մաս մը յետագային Վասպուրական կը հաստատուի եւ Արծրունիներու հետ նոյն ընդարձակ գաւառին ազատութեան համար կ՚ոգորի: Հոս ապրած պիտի ըլլայ Հազր (գուցէ Հազիր կամ Ղազար կամ Գազրիկ), որուն պատմութիւնը կը մնայ անծանօթ: Անուան ծանօթութիւնը կը պարտինք իր Գրիգոր որդւոյն, վասն զի ասոր անունը տուած ատեն Թովմաս Արծրունին կը

յաւելու՝ «որդի Հայրի»: Գրիգորի մասին նոյն պատմագիրը կը հաղորդէ որ «այլ եւս հարազատօք եւ զօրօք իւրեանց» Աշոտ Արծրունիի եւ ուրիշ իշխաններու հետ Սմբատ Բագրատունիին օգնութեան կը փութայ Մուսէի դէմ (851) եւ պատերազմը շահելու նպաստամատոյց կ'ըլլայ (էջ 109):

Ուրիշ Գնունիներ՝ մեցեւակ մը Վահան, Շապուհ, Ապուսէթ, Պատրիկ, Ապուսելմ եւ Վարդան հետեւելով (852ի ատենները) Գուրգէն Արծրունիի հրաւէրին՝ Ապուհեջմի եւ այլազգիներու դէմ պատերազմի կ'ելլեն:

Արինահեղ պատերազմ է այս (852ին). Թովմաս կը գրէ. «Դիմեցին խուռն յանդուգն յարձակմամբ եւ բախեցին զգունդն եւ պատառեցին զապամն եւ զարձուցին զայլազգիսն եւ զոչէին միշապաձայն եւ ընկանէին առխ-ծաբար եւ հարկանէին վարազաբար եւ մասնեցին ի սատակումն եւ ի պարտութիւն եւ իւրաքանչիւր այր զախոյեան իւր յերկիր հարեալ եւ ինքն զկնի միւսոյն ճեպէր...: Եւ եղեւ թիւ սպանելոյն ՌՊ. թող զբազում վիրաւորսն եւ զկողոպուտն եւ զձերբակալսն» (էջ 147):

Յուսուփ ոստիկանին օրով Գնունիներէն կը յիշուին իբրեւ պանծալի վկաներ իրենց կրօնական համոզումին համար համշիրակները Գուրգէն ու Դաւիթ, զորոնք Ասողիկ կ'անուանէ «մեծք եւ պատուականք» (էջ 167): Մարտիրոսութենէ յառաջ թէ ի՛նչ գործունէութիւն ունեցած են, այն մեզի չէ աւան-

դուած, բայց այնպէս կը թուի, թէ անոնք եւս թէպէտ դեռ «յարբունս մանկութեան» (Յովհ. Կաթ. Պատմ., էջ 138) Յուսուփի չէին ուզած հպատակիլ եւ անոր խուզարկու ասպատակաւորներու ձեռքերու մէջ կ'իյնան։ Եւ ասոնք՝ զանոնք բռնաւորին առջեւ կը հանեն։ Քրիստոնէական կրօնէն հրաժարելու համար անոնց հրապուրիչ շատ խոստումներ կ'ըլլան, սակայն զուր տեղ։ Յուսուփ մահուան վճիռը կ'արտասանէ։ Գուրգէն ու Դաւիթ կը տարուին «ի Թէատրոն» Դուինի (Յովհ. Կաթ. Պատմ., էջ 138) եւ հոն երկուքն ալ ծաղիկ հասակի մէջ կը նահատակուին եւ այն՝ նախ կրտսերը՝ երէցին յորդորին վրայ։

Մխիթար Այրիվանեցի կը հաղորդէ թէ 921ին Դաւիթ եւ Գուրգէն իշխանները կատարուեցան (Պատմ., էջ 71), իսկ Ասողիկ (Պատմ., էջ 168) եւ Վարդան (Պատմ., էջ 87) անոնց տօնախմբութիւնը կը դնեն Մարերի քսանին, մինչդեռ Յովհ. Կաթողիկոս (Պատմ., էջ 138) նոյն ամսոյն քսանուեօթին կը նշանակէ։

Ինչպէս Հ. Զամչեան արդէն ուշադիր եղած է, այս նահատակներու կատարումը Յայսմաւուրքներու մէջ Բուզայի օրով[11] եւս նշանակուած է, որով համանուն զոյգ եղ-

[11] Անոր ժամանակները կը նահատակուին երկրորդ Ատովմեանները (հմմտ. Ասողիկ, էջ 108՝ «էին ի սոցանէ արք եօթն, որոց գլխաւորին անուն Ատոմ կոչիւր, որ էր յԱղբակ գաւառէ յՄսերան գեղջէ», հմմտ. նաեւ Յովհ. Կաթ., էջ 123—124)։

բայրներ երեւան կու գան (Պատմ. Հայոց, Բ., էջ 1035, հմմտ. Հ. Աճառեան, Հայոց անձնանունների Բառարան, Երեւան 1942, էջ 511):

Յովհան Պատմաբանի (Պատմ., էջ 137—138) եւ Ասողիկի (Պատմ., էջ 167) Գուրգէնի ու Դաւիթի նուիրած տողերուն մէջ ոչ թէ միայն պատմական կէտերու, այլ եւ գաղափարի մեծ նմանութիւն կայ եւ մէկուն մէկալէն օգտուիլն ակնբախ է: Աւելորդ է կրկնել թէ ասոնց եւ Սահակ-Համազասպ Արծրունեաց վկայաբանութիւններու նմանութիւնն ալ աչքառու է:

Գուրգէն եւ Դաւիթ Գնունիներու նահատակութիւնն երգած է Ս. Հէքիմեան (Բազմավէպ, 1848, էջ 122—124)[12]:

Շապուհ Բագրատունին կ՚աւանդէ, թէ (անդ, էջ 82) Վասպուրականի Գուրգէն իշխանը հրաւէր կարդալով կը յաջողցնէ, որ Սմբատ Բագրատունի թագաւորին Ափխազներու դէմ ըրած ապստամբութեան մասնակցին Գնունիներն ալ, սակայն անոնց անունն ու գործը կը լռէ:

Խաչիկ կաթողիկոսը 976ին Նախավկայի վանքին թեմ ու վիճակ կը հաստատէ Նախիջեւան գաւառը — հրամանով Աշոտ թագաւորին — եւ կը գրէ հաստատագիր կոնդակ մը, որուն մէջ կը յիշուին հայազգի շատ մը իշխաններու անուններ: Անոնց կարգին նմանապէս Գնունի մը՝ Գէորգ: «Եւ յաւարտումն

---

[12] Կայ «Գանձ սրբոց Ատոմանց» (Տաշեան, Մայր Ցուց., էջ 421, 435 եւն):

եղեւ բանիս եւ գրիս ձեռամբ մեծանուն տեառն Խաչկայ կաթողիկոսի ամենայն Հայոց եւ տէր Բարգէնի եւ մեծ իշխանացն Ապլղարիպի իշխանին Հայոց եւ Վրաց, Վասակ իշխանին Սիւնեաց, Գրիգոր իշխանին Ռշտունեաց, Գէորգ իշխանին Գնունեաց, Շապուհ իշխանին Արծրունեաց»։

Նոյն Թուականին Աշոտ Թագաւորին Նախավկայի վանքի տուած նուիրագրին մէջ ալ կը հանդիպինք Գէորգ Գնունիի անունին եւ երկուքին մէջ ալ Արծրունի իշխանէն յառաջ յիշատակուած։ Նաեւ 981ին Հռիփսիմէ արքայադստեր կտակագրին մէջ Գէորգին անունը Շահապ Արծրունիէն առաջ դրուած է (Ասոնց մասին հմմտ. Մ. արքեպ. Սմբատեանց, Նկարագիր Երնջակայ Ս. Կարապետի վանից եւ շրջակայից նորին Տփխիս 1906, էջ 411, 419 եւ 424 եւ Հ. Հ. Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքերը, Բ., Վիեննա 1942, էջ 536 եւ 580)։

Գէորգով կը ստիպուինք Գնունիներու տոհմին պատմութիւնը փակել։ Սակայն միշտ բաղձալի եւ հետաքրքրական կը մնայ գիտնալ՝ թէ ե՛րբ եւ ի՛նչ պարագաներու տակ այդ զարմին կենսունակ արմատն ու ճիւղերը ամլութեան եւ չորութեան կը դատապարտուին։

Այսպէս Ժ. դարուն մէջ — գուցէ — Պատմութեան բեմէն կը հեռանան Գնունիները, թէեւ դեռ այսօր պակաս չեն այդ մականունով ընտանիքներ։ Անոնք կը հեռանան սիգապա՛նծ ու անբասի՛ր։ Զունին իրենց երա-

մին մէջ հաւատուրաց անձ եւ դասալիք զի-
նուոր ու զօրավար : Հայ արքունիքին եւ նա-
խարարութիւններու հետ լաւ յարաբերու-
թիւն կը մշակեն եւ միշտ կազմ ու պատրաստ՝
անոնց հետ հասարակաց թշնամիին դէմ ոգո-
րելու : Հաւատքի եւ հայրենիքի համար կը
զոհեն փառք ու հարստութիւն. հանգիստ ու
կեանք : Միշտ քաջակորո՛վ եւ պատնէշի՛
վրայ : Յաղթութեան դափնեայ պսակը՝ իրենց
վարսերուն վրայ հանգչած :

---

# ՌՇՏՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

## 1. ՌՇՏՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ԾԱԳՈՒՄԸ

*Ռշտունեաց նախարարութեան ծագումը կամ սկզբնաւորութեան պատմութիւնը մութ է. — Հայկական նախարարութիւններէն շատ սակաւներու ակնաղբիւրն արդէն ստուգապէս երեւան հանուած է:*

*Մովսէս Խորենացի Ռշտունեաց նախարարութիւնը Սիւնիքէն յառաջագայած՝ տեղեկացած է եղեր՝ «ԶՌշտունիս եւ զԳողթնացիս զտի պատմեալ ի Սիսականէն արդարեւ հաստուած. ոչ գիտեմ՝ թէ յանուն յարանցն զգաւառսն անուանեն, թէ յանուն գաւառացն զնախարարութիւնս կոչեցեալ» (Պատմութիւն Հայոց, Վենետիկ* 1881, *էջ* 177. *Հմմտ. Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ* 1885, *էջ* 36)*: Սամուէլ Անեցին հայ պատմահօր նախադասութիւնը գրեթէ կը կրկնէ, սակայն անունները քիչ մը փոփոխած, այս է՝ Ռշտունին՝ Ռուշտունի եւ Գողթնացին՝ Գողբանցի (Ժամանակագրութիւն, Վաղարշապատ* 1893, *էջ* 49):

*Հ. Ինճիճեան Խորենացիին խօսքերէն սա եզրակացութիւնը կը հանէ՝ թէ Ռշտունիները Գեղամի Սիսակ որդիէն սերած ըլլան (Հնախօսութիւն, Բ., Վենետիկ* 1835, *էջ* 183):

Մինչ Հ. Ալիշան գանոնք աւելի կ'ընդլայնէ՝ «Ընդ յառաջադէմս յիշխանազանց Հանդխա-ցան երբեմն եւ Ռշտունիք ի Ռաշտայ ու-մեքէ սերեալք, որ ի Սիսականաց անտի ըստ Խորենացւոյ, եւ ի Վաղարշակայ ամբարձան ի գահ» (Այրարատ, Վենետիկ 1890, էջ 428): Իսկ Գարագաշեան կը գրէ՝ «Անաչառ դա-տաստանաւ անհնար է մեզ նախարարու-թեանց հաստատութեան պատմութիւնն ի ձեռն Վաղարշակայ իբրեւ առաջին թագաւորի ընդունիլ, այլազգ, բայց եթէ մեծաւ մասամբ իբրեւ հայրենասիրական հնարք» (Քննական Պատմութիւն, Ա., Թիֆլիս 1895, էջ 259):

Ծանօթ է Ռաշամ Ռշտունի անունը (տես վարը), սակայն գայն Ռշտունի անուան ար-մատ դիւրաւ կարելի չէ առնուլ եւ հե-տեւցնել՝ թէ այն տոհմին նախահայրն եղած ըլլայ Ռաշամ եւ անոր անունովը՝ գարմը Ռշտունի յորջորջուած: Իսկ Հ. Ալիշան գիտէ Ռաշտա անունը (հմմտ. վերը) եւ անկէ կը սերեցնէ Ռշտունիները, սակայն անոր մասին տեղեկութիւն չ'աւանդեր — գտա՞ծ է այդ անունը գրութեան մը մէջ, թէ կը խորհի վերջինին մէջ՝ բառին արմատը գտնել, ինչ-պէս եւ՝ անոր նախահաւը: Կը մտածեմ թէ Ռաշամ անունը՝ Ռաշտա գրչութեամբ գտած ըլլայ ձեռագրի մը մէջ եւ գայն նախընտրած, վասն զի միջին մեսրոպեան երկաթագրի մէջ Մ եւ Տ գիրերը կրնան չփոթուիլ (հմմտ. Աճառեան Հ., Անձնանունների Բառ., Դ., էջ 313):

Ռշտունեաց գաւառին մէջ կայ Մանռաշտ քաղաքաւանը, որուն մերձ Մանաճիհր Ռըշտունին Յակոբ Մծբնացին սարկաւագները Բզնունեաց ծովը նետել կը հրամայէ: Կը մտածեմ ենթադրել այդ անունը իբր զոյգ անուններու միացումը՝ Ման(աճիրհ) եւ Ռաշտ (Ռշտունի): Սակայն Ռաշտ բառ ու անուն ինծի անծանօթ են եւ ձեռքիս տակ եղած լաւ Բառարաններու մէջ չտեսայ: Նաեւ Ռաշտ՝ Ռըշտի կամ Ըռըշտի վերածելն ալ այնքան դիւրաւ ներելի չէ: Միայն թէ ունինք Ագաթանգեղոսէն (Պատմութիւն, Վենետիկ 1862, էջ 597) եւ Սամուէլ Անեցիէն Ռուշտունիք[1] (հմմտ. վերը) ձեւը, որ Ռուշտ արմատը իբրեւ ընդունելի կը ցուցնէ: Ծանօթ է «ռուշտ» անյայտ իմաստով բառը, որ առանձին գործածուած չէ. «Սրանից ունենք միայն արխնռուշտ, արխնըռուշտ» (Աճառեան Հ., Արմատական Բառարան, Երեւան 1932, Ե., էջ 1235): Կան նմանապէս «ռաշիկ» եւ «ռըշիկ» բառերը, «Հաւանօրէն Վըռըշիկ ցեղական անունից, իբրեւ վռըշիկի տրեխ» (Ս. Մալխասեան, Հայերէն բացատրական Բառարան, Երեւան 1945, Բ., էջ 157), մինչ «Վռշիկ Ռշտունիից աղաւաղուած՝ 1. Ռշտունեաց եւ Մոկաց գաւառ-

---

[1] Ա. Աբրահամեանի հրատարակած Անանիա Շիրակացիի Աշխարհագրութեան մէջ կայ՝ «Վասպուրական ի մտից է Պարսկահայոց եւ առ երի Կորճէից: Գաւառք նորա երեսուն եւ հինգ եւ այսոքիկ՝ «Ռշտաւնիք, Տոսբ, Բուզունիք...» (հմմտ. Անանիա Շիրակացու, Մատենագրութիւնը, Երեւան 1944, էջ 349—350):

ների բնակիչ. Ռշտունցիների ժողովրդական անունն է՝ Վոշիկ 2. տրեխ (անդ, էջ 353. Համմտ. եւ Աճառեան, Հայերէն գաւառական բառեր, Թիֆլիս 1913, էջ 1004. Համմտ. նաեւ Հայրենիք, օրագիր, 1951, Թ. 11931): Նկատի կարելի է առնուլ նաեւ ռիշտ բառը, որ ունի ժլատ, կծծի իմաստը: Խորենացիական ստուգաբանութեամբ (արծիւ ունիս, գինի ունիս, Գին) գուցէ ցեղին նախահօր ագահութենէն՝ տոհմը այն յորջորջանքը ստացած ըլլայ: Նոյն իսկ, ինչպէս Սլաք ու Վարաժ անուն անձերէ կը սերին Սլկունիք եւ Վարաժունիք, այսպէս գուցէ Ռուշտ, Ռաշտ, Ռաշխտ, Ռիշտ անձէ մը՝ Ռշտունիք: Հ. Հիւբշման այն զարմին անունին կազմիչ մասեր կը համարի ռշտ, ռիշտ կամ ռուշտ —ունի—ք, ոյնի—ք (Համմտ. Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 210—211):

Հաւանական վարկած կը համարիմ՝ թէ Ռշտունի նախարարութիւնը ուրարտական ծագում ունի եւ կարելի է զայն միացնել Ռիշուանի հետ (մերձաւոր Ուշխտուինի) եւ պէտք է ըսել, թէ Ռշտունի անունը ուրարտական անուններու հետ շատ նմանութիւն ունի (Ռուշաս [2], Սարդուրիշ, Իշպուինիշ, Արգիշ—

---

[2] Ասլան Գ.՝ Rusas, Rousas կամ Ursa անուն-ները կը խորհի թէ կարելի է նոյնացնել Ռշտունիի հետ (Etudes Historique sur le peuple Arménien. Paris 1928, էջ 36, ծն. 2): Իսկ Honigmann Ernest (Vasilieu A. A. Byzance et les Arabes, Tome III, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, von 363—1051, Bruxelles 1935, էջ 21) կը կարծէ թէ Rēš'ainā Ռշտունիք ըլլայ: Համմտ. Ադոնցի մօտ Ri-

տիչ), եւ թէ Ռշտունիներու հողերը ուրարտական աշխարհի մէջ են (Բանասէր, 1902, թ. 8—9, 10. Կ. Բասմաճեան, Իսկական Պատմութիւն Հայոց, Կ. Պոլիս 1914, էջ 56—57. Սկանակ Բանասէր, Պատմութիւն Հայոց ի սկզբանէ մինչեւ ցԱրշակունիս, Պարիս 1903, էջ 25. Գ. Ղափանցեան, Պատմութիւն Ուրարտուի, Երեւան 1940, էջ 46 ու 178. հմմտ. եւ Գնունեաց մասին գրածները):

## 2. ՌՇՏՈՒՆԵԱՑ ԲԱՐՁՆ ՈՒ ՊԱՇՏՕՆԸ

Վռամական Գահնամակը այսպէս կը սկսի՝

«Առաջին իշխան Հայոց եւ Մաղխազն,
Ա. Սիւնեաց տէր,
Բ. Ասպետն,
Գ. Արծրունեաց տէր,
Դ. Մամիկոնէից տէր,
Ե. Շահապն Ծոփաց տէր,
Զ. Մոկաց տէր,
Է. Ռշտունեաց տէր,
Ը. Վահունեաց տէր,
Թ. Կասպից տէր,
Ժ. Անձեւացեաց տէր» եւն եւն (Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ 1890, էջ 430):

Ինչպէս ակներեւ է՝ Ռշտունիներու բարձն ու աստիճանը շատ պատուաւոր է եւ

---

śuaini, Ruiśiani-é, նաեւ Raśuni յատուկ անուններ (M. Adonz, Histoire d'Arménie. Paris 1946, էջ 178, 173, 211) հմմտ. դեռ՝ Բազմ. 1908, էջ 446 եւ Քասունի Ե., Նախահայկական Հայաստան, Պէյրութ 1950, էջ 398—399, ուր եւ Գնունեաց մասին):

բարձր։ Ալիշան կը գրէ՝ «Ի Վաղարշակայ ամբարձան (Ռշտունիք) ի գահ, ընդ պատուաւորս դասին եւ յԱգաթանգեղեայ եւ Թէպէտ ի յետին դարս միոյ լոկոյ գաւառի տէր ճանաչի տէրն Ռշտունեաց, այլ ի հնումն ընդարձակ երկրի եւ ժողովրդեան» (անդ, էջ 428)։

Պատմագիրները, ինչպէս վերը միոյն համար Հ. Ալիշան կը հաւաստէ, կու գան հաստատելու Գահնամակին դասաւորումը։

Ագաթանգեղոս՝ Գրիգոր Լուսաւորչի չքաղէր նախարարներու ցանկը կու տայ այսպէս՝ 1. Իշխանն Անգեղ տան, 2. Իշխանն Աղձնեաց, 3. Իշխանն Մարդպետութեան, 6. Իշխանն Կորդովտաց, 7. Իշխանն Ծոփաց, 8. Իշխանն Գազարացւոց, 9. Իշխանն Ռուշտունեաց, 10. Իշխանն Մոկաց, 11. Իշխանն Սիւնեաց» եւն եւն (տպ. Վենետիկ 1862, էջ 597)։

Փաւստոս Բուզանդ Վաչէ Մամիկոնեանի նիզակակիցներ կ'անուանէ՝ 1. Բագարատ Բագրատունի, 2. Մեհունդակ Ռշտունի, 3. Գարեգին Ռշտունի, 4. Վահան Ամատունի, 5. Վարազ Կամենական (Պատմ. տպ. Վենետիկ 1889, էջ 17)։ Նա Ս. Ներսէսի ուղեկից գիտէ՝ 1. Մարդպետ, 2. Բագարատ ասպարապետ, 3. Դանիէլ իշխան Ծոփաց, 4. Մեհենդակ Ռշտունի, 5. Անդովկ Սիւնի, 6. Արշաւիր Արշարունի, 7. Նոյն Ծոփաց, 8. Պարգեւ Ամատունի (անդ, էջ 72)։ Իսկ Փառէն Կաթողիկոսին չքաղէր են՝ «Մեծք եւ

գլխաւորք նահապետք»՝ 1. Վասակ Մամիկոնեան, 2. Մեհենդակ Ռշտունի, 3. Անդովկ Սիւնի, 4. Արշաւիր Կամսարական (անդ, էջ 44)։

Խորենացին Տրդատի բանակին բաժանումը նախ կը դնէ՝ 1. Միհրան առաջնորդ Վրաց, 2. Բագարատ ասպետ, 3. Մանաճիհր Ռշտունի, 4. Վահան Ամատունի (Պատմ., էջ 357), սակայն այլուր գրեթէ հակառակ կը շրջէ՝ 1. Բագարատ Ասպետ, 2. Միհրան առաջնորդ Վրաց, 3. Վահան Ամատունի, 4. Մանաճիհր Ռշտունի (անդ, էջ 407)։

Ղազար Փարպեցին Յազկերտի հրամանով ու հրաւէրով Պարսկաստան գացող նախարարներու անուանացանկը կը ներկայացնէ՝ 1. Վասակ Սիւնի, 2. Ներշապուհ Արծրունի, 3. Արտակ Ռշտունի, 4. Գատիշոյ Խորխոռունի, 5. Վարդան Մամիկոնեան, 6. Արտակ Մոկացի, 7. Մանէճ Ապահունի, 8. Վահան Ամատունի (Պատմ., Վենետիկ 1933, էջ 143)։ Նոյն անուանացանկը կը կրկնէ նմանապէս Եղիշէ (Պատմ., Վենետիկ 1893, էջ 76) որ ուխտադրուժ եւ Վասակի հետեւող նախարարներու անունները սա կարգով կը յիշէ՝ 1. Արտակ Ռշտունի, 2. Գատիշոյ Խորխոռունի, 3. Գիւտ Վահեւունի, 4. Տիրոց Բագրատունի, 5. Մանէճ Ապահունի, 6. Արտէն Գաբեղենից, 7. Ընջուղ Ակէոյ, 8. Ներսեհ Ուծայ (անդ, էջ 172. հմմտ. դեռ Գ. Տէր-Պօղոսեանի կազմած համեմատական տախտակները, Հանդէս Ամսօրեայ, 1895, էջ 22,

58—59, դարձեալ՝ հմմտ. Հ. Ս. Կոգեան, Կամսարականները, Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց, Վիեննա 1926, էջ 48—61)։

Երբ այս համեմատական տախտակները յառաջ կը բերեմ՝ չեմ ուզեր հետեւցնել ու ըսել՝ թէ հայ պատմագիրները նախարարներն ու անոնց ազգատոհմը յիշատակած ժամանակ՝ միշտ անոնց աստիճանը նկատի առած ու այնպէս անունները շարած ըլլան։ Սակայն չէ ալ կարելի վարկանել, որ անոնք զանոնք յառաջ բերած են՝ ինչպէս որ գրչին ծայրին եկած ըլլան։ Որոշ ուշադրութիւն մը կարելի չէ չենթադրել։ Այս պարագան, Գահնամակը ու պատմական անցքերը կը հաստատեն Ռշտունի նախարարութեան աւագութիւնն ու արժէքը[3]։

Ռշտունեաց նախարարութիւնը հայ բանակին կու տար 1000 այր պատերազմող եւ պաշտպան հայրենիքին (Ալիշան, Այրարատ, էջ 424—425)։ Եւ սա էր՝ նմանապէս առաջնորդ ու զօրավար։ Այնպէս որ Պատմագիրներու տուեալներէն Ալիշան կ'եզրակացնէ «Մեծն Տրդատ (եւ ուրիշ թագաւորներ) ի նա յանձն արար զառաջնորդութիւն հարաւային բանակին Հայոց» (անդ, էջ 428)։

Ռշտունի նախարարներու եւ զօրավարներու անունները եւ գործունէութիւնը պիտի տեսնենք ստորեւ, իսկ «Առաջին անգամն է որ

---

3 Սակայն չորս հարիւր Բարձերուն մէջ շատ վերջերը կը յիշուին (հմմտ. Սոփերք, Զ. Մեսրոպ Երէց, Պատմութիւն Ս. Ներսէսի հայրապետի Հայոց, Վենետիկ 1853, էջ 33)։

Ռշտունեաց նախարարական տոհմը տեսնում ենք սպարապետութեան պաշտօնում[4]: Թէոդորոս այդ պաշտօնն ստացել էր Պարսից Թագաւորից, որի արքունիքում էլ նա մեծացել էր շատ նախարարական տոհմերի նման» (Լէօ, Պատմ. Հայոց, Բ., Երեւան 1947, էջ 309): Նա աւելի ստէպ՝ զօրավար կը կոչուի (հմմտ. վարը):

Ռշտունի նախարարները իբրեւ տէրեր Ռշտունեաց ընդարձակ գաւառին՝ գործունէութեան եւ շինարարութեան լայն ասպարէզ ունէին: Կը ստիպուէին զայն պաշտպանել ասպատակութիւններու եւ ներխուժումներու դէմ: Փոյթ կը տանէին՝ անոր զարգացումին ու վերելքին (հմմտ. վարը եւ Ալիշան, Այրարատ, էջ 428):

## 3. ՌՇՏՈՒՆԵԱՑ ԵՐԿԻՐԸ

Ռշտունեաց նախարարութեան երկիրն ու գաւառը կոչուած է «աշխարհ Ռշտունեաց». սակայն Խորենացին տարակոյսի մէջ է թէ գաւառէ՞ն նախարարութիւնն իր անունը կը ժառանգէ (հմմտ. վերը): Հ. Ալիշանի համաձայն Ռաշատ անուն անձէ մը գաւառը կ՚առնու իր յորջորջումը (հմմտ. վերը): Իսկ Հ. Հիւբշման տոհմի անուն կը

---

[4] Մանաճիհր Ռշտունին եւս Շահապիվանի ժողովի կանոններու մէջ սպարապետ անուանուած է (հմմտ. վարը): Զօրայ ալ սպարապետ է (հմմտ. վարը) ինչպէս եւ Բարգափրան (հմմտ. վերը):

համարի (Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 210)։

Ուշտունեաց երկիրը անծանօթ չէ — այժմ կը կոչուի Գաւաշ — ուստի եւ հակիրճ տեղեկութիւններով պիտի գոհանամ ու անոնք ալ պարզապէս անոր համար՝ թէ ո՞ր երկրի մէջ հաստկնեացին, գործեցին ու արդիւնաւորուեցան Ուշտունիները[5]։

Բզնունեաց ծովի հարաւային եզերքը կը գտնուի Ուշտունեաց գաւառը եւ այս պատճառով ծովը երբեմն նաեւ Ուշտունեաց ծով կոչուած է (Բուզ., էջ 25)։ Նմանապէս՝ որովհետեւ ծովը նոյն նախարարութեան ենթարկուած էր։

Բուզանդ գաւառը կ՚անուանէ «Աշխարհ» եւ ենթադրել կու տայ գաւառին մեծութիւնն ու ընդարձակութիւնը։ Բայց աննպաստ պարագաներու տակ անոր սահմանները անճկացած են։

Ուշտունեաց երկրի բարձր լեռն է՝ Ընձաքիարս կամ Ընձաքիսար եւ կամ Կապուտկող կամ Կապուտողն։ Կը նայի Վանայ ծովին վրայ։ Անոր ստորոտը կայ համանուն գիւղը։ Դարձեալ աղբիւր մը, զոր կը բղխեցնէ Յակոբ Մծբնացին եւ որուն մօտ յետագային վանք ու եկեղեցի կը կառուցուին՝ նոյն սուրբին անունով (հմմտ. վարը եւ Բուզանդ,

---

[5] Ուշտունեաց գաւառին մասին հմմտ. Laurent J L'Arménie entre Byzance et l'Islam depuis la Conquête Arabe jusqu'en 886, Paris 1919 էջ 89 եւ Հիւբշման Հ. Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 210—212։

էջ 24, Հ. Ղ. Ինճիճեան Ստորագրութիւն, Հին Հայաստանեայց, Վենետիկ 1835, էջ 165—166)։

*Ուրիշ բարձր լեռ մըն է՝ Արտոս։ Թովմաս Արծրունին անոր մասին սա ուշագրաւ տեղեկութիւնները կ'աւանդէ՝ «Ի հարաւակողմն կուսէ ամրոցին կայ բարձրաբերձ լեառն Արտոս, որ ի գարնանային հասարակութենէն մինչեւ ցաշնանային եղանակ՝ ամբարեալ պահէ յինքեան զզալարութիւն արմատոց եւ ծաղկանց եւ գձիւնահոսս ամբարեալ ի պէտս Թագաւորաց եւ ամենայնի, որ ցանկայցի ոք առնուլ։ Նաեւ ի գլխոյ լերինն հոսեալ իջանեն գետք սահանակարկաջք յորդահոսք, որով ոռոգանի երկիրն առհասարակ, որք եւ ի ծովու անկանելով բղխեն ձկունս մանունս առ ի պէտս վայելչութեան բնակչաց աշխարհին եւ համբարեն զինչս բազումս ի գանձս Թագաւորաց» (Թ. Արծրունի, Պատմ., Ս. Պետերբուրգ 1887, էջ 291)։*

*Մանակերտի մերձ կայ փոքրիկ լեռ մը կամ բարձունք մը, ուսկէ Մանաճիհր Ռշտունին Յակոբ Մծբնացիի սարկաւագները ծով գահավիժել կը հրամայէ (Բուզ., Պատմ., էջ 24)։*

*Ռշտունեաց աշխարհը ջուրի կարօտութիւն չէր զգար, զի ունէր իր ափին Բզնունեաց ծովակը եւ քանի մը գետակներ։ Իսկ Աղթամար կղզին Ռշտունի եւ Բզնունի նախարարներու փնտռած վայրն էր եւ անոնց գուրգուրանքին առարկան։ Դարերու ըն-*

թացքին ենթարկուած է Անձտայ, Բզնունեաց, բայց մանաւանդ Ռշտունեաց ու Արծրունեաց նախարարութիւններու (Ինճիճեան, Ստորագրութիւն Մեծին Հայոց, Վենետիկ 1822, էջ 172, ուր եւ յառաջբերութիւններ եւ վկայութիւններ ազգային մատենագրութիւններէ) :

Ռշտունեաց գաւառի քաղաքներէն ու գիւղերէն յիշենք.

1. Ոստան, որ ծովեզերք կը գտնուի եւ Ռշտունիններու գահանիստն էր (Ն. Ադոնց, Հայոց նախարարութեան ծագումը, թրգմ. ռուսերէնէ Գ. Գիւզալեան, Պէյրութ 1949, էջ 84) : Իր ամէնագգի առաւելութիւններովը ուշագրութիւնը կը գրաւէ Վարդ Պատրիկի ու Գագիկ Թագաւորի եւ զանազան շինութիւններով կ՚օժտուի ու կ՚ընդարձակուի (Թ. Արծ, Պատմ., էջ 255 եւ 290—292) :

2. Մահռաշտ, որ կը կարծեմ՝ թէ իր անունն առած ըլլայ Մանաճիհր Ռշտունիէն (հմմտ. վերը) եւ զոր Գագիկ Արծրունին Ոստանի պէս նախանձելի զարգացումի եւ բարգաւաճումի կը հասցնէ (անդ, էջ 255) :

3. Մանակերտ, երբեմն գրուած ու գործածուած նաեւ Մանազկերտ, սակայն աղաւաղում կը նկատեմ ու անոր մէջ եւս կը տեսնեմ Մանաճիհր Ռշտունիի անուան կրճատումը : Այս տեղն է՝ որ Մանաճիհր Ռշտունին Յակոբ Մծբնացիի սարկաւագները գաբահոս ծովամոյն կ՚ընէ (հմմտ. վերը եւ Արծ., էջ 255) :

4․ Քարադաշտ, որ փոքրիկ գիւղ մըն է վերնոյն մերձ (Ինճիճեան, անդ, էջ 159)։

5․ Նորագիւղ, որուն բնակիչները Բուղայէն կալանաւորուելով «ամէն ի տեղի վաճառուն Ոստանին Ռշտունեաց արկեալ տոռունս ի պարանոցս հանին ի սուր» (Արծ․, էջ 128)։

6․ Պարծիս գիւղ, ուր կ'ամփոփուին Թովմաս Առաքեալի նշխարները (Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 170)։

7․ Ռշտունեաց գիւղերէն են նմանապէս՝ Տշող, Գուկանս, Նարեկ, Գանձակ, Ուլու, Շատուան եւ ուրիշներ, որոնց կարգին՝ Աղբաթանից, ուսկէ էր Աբրահամ կաթողիկոսը։

Նոյն գաւառին մէջ է նաեւ Եղիշէի այրը եւ հոն կը կանգնուին բազմաթիւ սրբավայրեր ու վանքեր, ինչպէս՝ Ս․ Թովմասի, Իլու Քառասուն խորանի, Լուսապտուղ Ս․ Սահակի, Կապուտկողայ Ս․ Յակոբի, Ս․ Կարապետի, Ոչխարանից, Նարեկայ, Զաղար Ս․ Նշանի, Ս․ Վարդանի վանքերը (հմմտ․ Հ․ Հ․ Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքերը, Վիեննա 1940, էջ 141—228)։ Բայց ամէնէն հոյակապ վանքն է՝ Աղթամարի Ս․ Խաչի վանքը (հմմտ․ անդ, էջ 86—133, ուր եւ հմմտ․ Առաքէրի վանքը՝ էջ 133)։

Ռշտունեաց գաւառը կ'արժանանայ եկեղեցական բարձրաստիճան առաջնորդ ունենալու։ Զայն կը հովուեն ու կը կառավարեն եպիսկոպոսներ, որոնցմէ երկուքը մասնաւոր

անուն եւ հռչակ ունին: Մին՝ Սահակ եպիսկոպոս՝ Վարդանանց շրջանին . եւ միւսը՝ Աբրահամ, որ կաթողիկոսութեան գահը կը բարձրանայ:

Թէեւ չէ յիշուած, սակայն այդ բութենէն չեմ ուզեր հեռացնել՝ թէ Ռշտունիները անդրանիկ հայրապետն եղած ըլլայ Ս. Սահակ, որ 449ին Արտաշատի ժողովքին ներկայ կը գտնուի: Այն սինհոդոսին մասնակցող եպիսկոպոսներու ցանկին մէջ՝ մինչ Փարպեցին զինքը հինգերորդ բարձրաստիճանաւոր եկեղեցականը կը նշանակէ (Պատմ., էջ 134), Եղիշէ զինքը տասնուերեքերորդը կը դնէ եւ այն՝ Արծրունիներու Մուշէ եպիսկոպոսէն վերջ (Պատմ., էջ 50), ինչպէս Փարպեցին ալ՝ նոյն հայրապետէն յետոյ անոր անունը կու տայ: Սահակ իր իսկապէս առաքեալի եւ հօտապետի գործունէութեամբ եւ հաստատուն հաւատքովը ժամանակին մեծագոյն դէմքերէն է: Կը կալանաւորուի, օտար աշխարհներ տարագիր կը քշուի, ամէն տեսակ զրկանքի կը դատապարտուի եւ վերջապէս «Յարուցեալ ինքնին Վեհդենշապուհ առաջի գործակցաց իւրոց հարկանէր սուսերաւ զուս սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ հուպ ի զօտին մերձեցուցանէր զվէրան եւ սրբոյ եպիսկոպոսին ի սաստիկ հարմանէն դրդուեալ, ոչ գլորեալ անկանէր յերկիր, այլ ի քարի մի յեցեալ հաստատէր...: Եւ սուրբն Սահակ կայր եւս ոգով, զորոյ յետ վախճանելոյն ամենեցուն կարեցին զգլուխն սուսե-

րաւ» (Փարպ., էջ 222—223. Եղիշէ, էջ 341—342)։ Անոր չարակրութեան ու ցաւին եւ փառաւոր յաղթանակին կցորդ ու բաժանորդ է «սուրբ սարկաւագն Քաջաջ յՌշտունեաց» (Փարպ., էջ 32 եւն. Եղիշէ, անդ, էջ 342)։

Բաւական մերձ Բաբգէն կաթողիկոսի օրով (516) կը յիշուի Դանիէլ եպիսկոպոս Ռշտունեաց ի Պարսս գրուած թղթին մէջ (Գիրք Թղթոց, Տփխիս 1901, էջ 42)։ Իսկ Ներսէս կաթողիկոսի «Միաբանութեան առ եպիսկոպոսունսն» թղթին մէջ կը հանդիպինք Սահակ եպիսկոպոս Ռշտունեացի (անդ, էջ 70)։ Մինչդեռ «Միաբանութեան ուխտի» թղթին մէջ անոր անունը չկայ (անդ, էջ 73)։ Բայց Յովհաննէս Բ. Գաբեղենեցի կաթողիկոսին «Առ եպիսկոպոսունս» Աղուանից թղթին մէջ կը տեսնենք Ռշտունեաց եպիսկոպոս Քրիստափոր (անդ, էջ 81)։ «Կարելի է ըսել թերեւս՝ թէ Ռշտունեաց աթոռոյն վրայ բարձրացած ըլլայ Քրիստափորէն ետքը Աբրահամ եպիսկոպոս Աղբաթանցին» (Հ. Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, Վիեննա 1910, էջ 149), որ յետոյ կաթողիկոս կ'ընտրուի (անդ, էջ 149—157)։

Ներսէս Շինողի ժամանակ Ռշտունեաց եպիսկոպոս է Սիմէոն, որ Դունայ ժողովին անդամներէն է (Չամչեան, Պատմ., Բ., էջ 345)։ Իսկ Վարդ Պատրիկ իր նենգամտութեան համար (հմմտ. վարը) ապաշխարանք կը խնդրէ Գրիգորիս եպիսկոպոսէն (Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 165)։ Թովմաս

*Արծրունիի հաղորդագրութեան համաձայն Գրիգոր եպ. Ռշտունեաց Դունայ երկրաշարժի ատեն կը տառապի (Պատմ., էջ 231): Յետագային Սենեքերիմ Արծրունիի թագաւորութեան միջոցին Ռշտունեաց գաւառին հայրապետներէն են՝ Եղիշէ ու Սահակ (Մ. Ուռհայեցի, Պատմ., Երուսաղէմ 1869, էջ 49 եւ Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 165):*

*Այս եպիսկոպոսները իրենց խօսքովն ու գործովը ազդած են Ռշտունի նախարարներու վրայ եւ Ռշտունին Թէոդորոս մեծ ազդեցութիւն ունեցած է հայրապետական աթոռին վրայ (հմմտ. վարը):*

*Ռշտունեաց գաւառին ու անոր եկեղեցականութեան առնչութեամբ՝ հարկ է յիշել անունը՝ Եղիշէ Պատմագրի, որ հոն ապրած ու մեռած է եւ որուն աճիւններն Զաղար Ս. Նշանի վանքը ամփոփուած կ՚աւանդուին (Արծ. Պատմ., էջ 81, Սոփերք, ԺԱ., Պատմութիւն վարուց Ս. Եղիշէի վարդապետի, Վենետիկ 1854, էջ 144. Հ. Հ. Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքերը, Ա., էջ 206[6]):*

## ՌՇՏՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԸ

*Ռշտունիներու նախահայրը կը մնայ անծանօթ:*

*Հ. Ալիշան* Ռաշատ *անունով մէկը կը դնէ անոնց անդրանիկ ներկայացուցիչը*

[6] *Եղիշէի մասին ընդարձակ ու մանրաքննին Ուսումնասիրութիւն ունի Հ. Ն. Ակինեան «Եղիշէ վարդապետ եւ իւր պատմութիւնն Հայոց պատերազմի Ա. եւ Բ. մաս, Վիեննա 1932 եւ 1936:*

(հմմտ. վերը)։ Թովմաս Արծրունիին մօտ կը գտնենք Ռաշամ Ռշտունի, որ Ռաշատի հետ կրնայ նոյնանալ. «Միայն զմերս գրաւեաց զմիտս եւ զտեսութիւն հրաշակերտն եւ քան զբազումս նորանշանն եւ զարմանալին Աղթամար, որ թէպէտ եւ յառաջ քան զայսոսիկ ի Դաւթայ Սախռունոյ եւ յՌաշամայ Ռշտունւոյ եւ ի Բագափրանայ ասի առեալ շինութիւն» (Պատմ., էջ 293. հմմտ. Հաւաք. 6)։ Կեղծիքի արդիւնք է այս (Հ. Աճառեան, Հայոց անձնանունների Բառարան, Բ., Երեւան 1944, էջ 23 եւ Ե., 1948, էջ 313)։

Մովսէս Խորենացին Ռշտունեաց տոհմէն իբրեւ առաջին քաջարի իշխան ու զօրավար դիտէ Բարգափրան, որ Ռաշամի հետ կը գործէ (Պատմ., էջ 201. հմմտ. Յովհաննէս Պատմագիր, Պատմ. Հայոց, Թիֆլիս 1912, էջ 80)։

Խորենացին կը գրէ՝ «Յայնմ ժամանակի առեալ Տիգրանայ (Մեծի) զԲարգափրան նահապետ Ռշտունեաց նախարարութեան սպարապետ կացուցանէ Հայոց եւ Պարսից զօրաց եւ առաքէ ի վերայ զօրաց Հռոմայեցւոց հրաման տուեալ զբնակիչս աշխարհին Ասորւոց եւ Պաղեստինացւոց ի հաշտութիւն հաւանութեան խօսել» (Պատմ., էջ 202)։ Անոր կը ներկայանայ Անտիգոնոսի խնամքին Պակարոս, որ զինքը կը յորդորէ «Ընկենլով ի թագաւորութենէն Հրէից զՀիւրկանոս եւ թագաւորեցուցանել զԱնտիգոնոս եւ փոխարէն ստանալ հինգ հարիւր գեղեցիկ կին եւ հա-

դար քանքար»։ Հայ սպարապետը ինքզինքը համամիտ կը ցուցնէ, սակայն Հիւրկանոս զինքը կանխելով՝ խաղաղութեան մասին կը խորհրդակցի։ Այն ատեն Բարզափրան Գնէլ Գնունի տակառապետը Երուսաղէմ կ'առաքէ իբրեւ թէ «ի պատճառս խաղաղութեան, բայց ի դաղտնիս օգնել Անտիգոնեայ»։ Գնէլ Հիւրկանոս կը համոզէ Բարզափրանին առ-ջեւ ելլել եւ նա վերջինէն երդում ընդունելէ յետոյ Փասայէլի հետ «Գայ առ Բարզափրան ի ծովեզերն ի գեօղն, որ կոչի Եքտիպոն»։ Հայ զօրագլուխը նախ կը պատուէ ու կը մե-ծարէ հրեայ քահանայապետը եւ ապա այն-պէս մը կ'ընէ, որ անիկա իյնայ ձեռքը Ան-տիգոնոսի, որ անոր «Զականջն ատամամբք ի բաց կարէր, զի թէ այլ ժամանակ փոխեսցի (սրբագրել՝ փախիցի), անհնար լիցի նմա զքահանայութիւնն ունել, քանզի օրէնքն զող-ջանդամսն հրամայեն կացուցանել քահա-նայս»։ Քաղաքական գանազան անցքերէ վերջ «Զհիւրկանոս կապեալ ածեն Տիգրանայ հան-դերձ գերութեամբն եւ Տիգրան հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զերբին Հրէից, որ ի Մարխասցւոց ի քաղաքն Տամի-րամայ» (Խոր., Պատմ. էջ 203—206, 212—213, Ասողիկ, Պատմ., էջ 40 եւ քիչ մը տար-բեր՝ Յովհաննէս Կաթ. Պատմ., էջ 30)։

Հիւրկանոսի կալանաւորումն ու ապատա-գրումն եւ ապա անոր դժբախտ մահը՝ Յով-սեպոս հաւատարիօրէն այսպէս կը պատմէ՝ «Տեսանք թէ ինչպէս Պարթեւներու զօրքե-

րու զօրավարները Բարզափառնէս եւ Բակուր, կալանաւորեցին Հիւրկանոս քահանայապետը եւ Հերովդէսի Փասայէլ եղբայրը, որ գերութեան ամօթին չտոկալով՝ ինքզինքը սպաննեց: Արդ կը մնայ մեզի հաղորդել՝ թէ ի՛նչպէս Հիւրկանոս ազատեցաւ եւ եկաւ գտնելու Հերովդէսը, երբ անիկա թագաւոր եղաւ: Հիւրկանոս Պարթեւներու Հրահատ Դ. թագաւորին տարուելով՝ իր ազնուական տոհմին համար մեծապէս պատուեցաւ եւ կապանքներէն արձակուեցաւ ու հրաման ստացաւ բնակելու Բաբելոն, ուր բազմաթիւ Հրեաներ կը գտնուէին: Ոչ թէ միայն այս մեծ քաղաքին մէջ բնակողները զինքը կը յարգէին իբրեւ քահանայապետ ու իրենց թագաւորը, այլ եւ բոլոր Հրեաները, որոնք Եփրատի միւս կողմը կը նստէին՝ նոյն մեծարանքը իրեն կը մատուցանէին: Նա՝ երբ իմացաւ Հերովդէսին թագաւորելը՝ ցանկացաւ իր հայրենիքը դառնալ եւ Հրահատէն արտօնութիւն ստացաւ, թէեւ բարեկամներէն շատերը անոր խորհուրդ տուին հոն կենալու: Նմանապէս երբ Հերովդէս տեղեակ եղաւ Հիւրկանոսի տրամադրութեան՝ Հրահատին Սարամադգա անուն անձ մը առաքեց շատ ընծաներով՝ մինչեւ որ Հրահատ հաւանելով զինքը թողուց. եւ Բաբելոնի մէջ բնակող Հրեաները անոր ճանապարհածախսը հայթայթեցին: Հերովդէս առ երես զինքը շատ մեծարեց եւ մինչեւ անգամ անոր տուաւ ժողովներու նախաթոռն ու բարձը, եւ այնպէս

կարգադրեց այն ամէն բան ինչ որ պէտք էր, որպէս զի չիմանար՝ թէ գաղտնի դաւ մը կը նիւթուէր իր դէմ...: Անտոնիոսի Ակտիոնի քով պարտուելէն յետոյ՝ Հերովդէս Օգոստոսէն կասկածելով՝ թէ գուցէ զինքը իշխանութենէ զրկէր՝ ի վրէժ այն բարեկամութեան, զոր ունէր անոր թշնամիին Անտոնիոսի հետ, հրամայեց սպաննել ութսունամեայ Հիւրկանոս, իբրեւ թէ Արաբացիներու Մաղքաս կուսակալին հետ գաղտնի յարաբերութեան մէջ ըլլար ու ծածուկէն ուզէր իրեն դաւել: Այսպէս՝ կը վերջացնէր Հիւրկանոս իր կեանքը, որ այնքան առլցուն եղաւ տառապանքներով» (Յովս. Նախն. Պատմ., ԺԵ., 9. հմմտ. Մ. Ա. Գարագաշեան, Քննական Պատմ. Հայոց, Թիֆլիս 1895, Բ., էջ 176):

Գարագաշեան (անդ, էջ 177) նկատի ունենալով Յովսեպոսի հաղորդածները շատ տեղին կը գրէ՝

«Զորս վաւերականութենէն դժուար է կարծենք տարակուսել, մանաւանդ ի շնորհս Խորենացւոյ»: Իսկ Աճառեան կը շեշտէ՝ «Այս բոլորը Խորենացին կամայական կերպով վերածել է հայկականի» (Հայոց անձնանունների Բառարան, Բ., էջ 387): Այսպէս՝ Բարզափառնէս պարթեւ զօրավարը՝ հայ Բարզափրան Ռշտունի սպարապետ ըրած է ու անոր վերագրած է վերոյիշեալները: Իսկ Հրեայները գերութեան եւ ուրիշ պարագաները՝ նա ծանօթ է Փ. Բուզանդէն եւ այդ հիմքի

վրայ կառուցած է իր շէնքը (հմմտ. էջ 177—178)։

—

Ագաթանգեղոսէն կ՚իմանանք՝ թէ Տրդատ Մեծ Գրիգոր Լուսաւորչին դէպի Կեսարիա ուղեկից ու չքաղիր կ՚առաքէ նմանապէս «Իններորդ՝ իշխանն Ռուշտունեաց աշխարհին... զի տարեալ զԳրիգորն քահանայապետ կացուսցեն իւրեանց աշխարհին» (Պատմ., էջ 597—598), սակայն նախարարին անունը կը լռէ։ Նա արդէն ուղեկից աստիճանաւորներու տոհմերուն յիշատակութեամբ կը գոհանայ։

—

Իսկ Բուզանդէն յականէ յանուանէ յիշատակուած առաջին Ռշտունի նախարարն է Մեհունդակ կամ Մեհենդակ։ Նա հաւանօրէն անդրանիկ եղբայրն ըլլայ Գարեգինի, որուն մասին քիչ մը վերջ։ Մեհունդակ քաջարի նիզակակիցն է Վաչէ Մամիկոնեանի ու յաղթական զօրավարը՝ Գարեգին Ռշտունիի, Վահան Ամատունիի եւ Վարազ Կամենականի հետ։ Անոնք՝ «Անվեհեր հասանէին, հարկանէին, սատակէին զօրսն Ալանացն եւ Մազքթացն եւ Հոնացն եւ զայլոց ազգացն եւ լնուին զդաշտն առապարացն դիակամբք մեռելոց, մինչ զի իբրեւ զգետ յորդեցեալ երթայր արիւնն անհնարին... եւ զգլուխն Սանեսանայ մեծի թագաւորին եկին բերին ա—

ռաջի արքային Հայոց» (Բուզ., Պատմ., էջ 17)։

Խոսրով Թագաւորին հրամանովը եւ աւագ նախարարներու համաձայնութեամբ՝ Վաչէ Մամիկոնեան անոնց հետ միացած՝ Բզնունեաց անհաւատարիմ ու դաւաճան իշխանին — Դատաբէնի — վրայ կը յարձակի ու անոր սերունդը բնաջնջելու կը ձգտի։ Բուզանդ առանձնապէս կը շեշտէ՝ թէ անոր տոհմը — կին ու որդիներ — Ռշտունիներու իշխանին (ոչ՝ իշխաններու) Աղթամար կոչուած կղզիին ամրոցին մէջ կը գտնուէին եւ Վաչէ Մամիկոնեան նաւ մտնելով՝ իգական սեռին անգամ չուզեր խնայել՝ «Անցեալ ի կղզին առհասարակ ոչ զէգ թողոյր եւ ոչ զարու» (Պատմ., էջ 18)։

Կարելի է Վաչէի հետեւող աւագ նախարարներու շարքին մէջ նկատել նաեւ Մեհունդակի անունը եւ այնպէս մեկնել Վաչէի անփափկանկատ ու անվախ անցքը՝ Աղթամար եւ հոն ըրած կոտորածը։ Իսկ իգական սեռին ու Դատաբենի զաւակներու ապաստանումը Աղթամար՝ բնական հետեւանքն էր մերձաւոր վայր մը ապաստանելու՝ ասպատակաւորներու եւ պատուհասողներու ձեռքէն զերծանելու համար։ Անոնք այդ միջոցին դուցէ դիմած էին՝ այդ կերպով՝ Ռշտունիներու շնորհքը աղերսելու եւ գթութեան արժանանալու համար։ Եւ կամ թերեւս անոնց մէջ նոյն իսկ ազգականութեան կապ մը կար։ Մինչ Բուզանդ Դատաբեն կամ Դատա-

րէն Եղնունեաց նահապետ կը ներկայացնէ՝ Աղոնց անոր անունը Ռշտունիներու նախարարներու շարքին մէջ կ՚օղակէ (հմմտ. Հայոց նախարարութեան ծագումը, էջ 88), որ կարծեմ լոկ շփոթութեան հետեւանք ըլլայ։

Մեհունդակ շքադիր–ուղեկից է Վասակ Մամիկոնեանի, Անդովկ Սիւնիի, եւ Արշաւիր Կամսարականի հետ՝ Տարօնեցի Փառէնի՝ Կեսարիա կաթողիկոսական ձեռնադրութեան երթին (Բուզ., էջ 44—45)։

Ամենեւին դժուարութիւն չեմ գտներ Մեհենդակի կամ Մեհունդակի հետ նոյնացնելու Մեհեն Ռշտունին։ Սա՝ մին է այն նախարարներէն, որոնք կ՚առաքուին Ներսէս եպիսկոպոսապետին հետ առ կայսրն Յունաց Վաղէս... «Ի սէր միաբանութեան» (Բուզ., էջ 106. Զ. Սոփ., էջ 52)։ Ժամանակը կը յարմարի եւ Մեհենդակ արդէն ստէպ ուրիշ առիթներու մէջ առաքելութեան կը յղուի, ինչպէս նաեւ կանխաւ Ներսէսի հետ Կեսարիա, որպէս զի հայրապետական ձեռնադրութիւն առնու (Բուզ., էջ 72 եւ Սոփերք, Զ., էջ 30)։ Անունի մէկ վանկի կրճատումը կրնայ գրչագրի վրիպակ ըլլալ եւ կամ անոր փաղաքշական կոչումը յիշեցնել։

Մեհենդակ կ՚ունենայ Տաճատ անունով որդի մը, որ Ռշտունիներու կոտորածէն կ՚ազատի, ինչպէս քիչ վերջ պիտի նկատենք։ Մինչ Բուզանդ ազատուած Ռշտունին կ՚անուանէ Տաճատ (Պատմ., էջ 47), Թովմաս Արծրունին կը կոչէ Մեհէնդակ «Յափշտակե-

ցին (Մամիկոնեանները) զՃաւաշ որդի Վաչէի Արծրունւոյ եւ զՄեհէնդակ Ռշտունի, քանզի էին մանկունք տիոյք. առին գնացին յամուրսն Տայոց եւ ի չափ հասեալ ի տիոց ազգականաց՝ ետուն զդստերս իւրեանց կնութեան մանկանց եւ ի նոցանէ աճեցեալ ազգ երկոցունց Արծրունեաց եւ Ռշտունեաց» (Պատմ., էջ 59—60): Թովմաս Արծրունին այս սխալին մէջ կը գահավիժէ Խորենացիին սա խօսքէն «Բայց զմանուկն մի, որդի Մեհենդակայ եղբօր նորա (Զօրայի) փախուցեալ դայեկացն ապրեցուցին» (Պատմ., էջ 427):



Հաւանօրէն Մեհենդակ Ռշտունիին եղբայրն ըլլայ՝ ԳԱՐԵԳԻՆ, որ անոր համակարծիք ու համամիտ է եւ նաեւ՝ նիզակակից Վաչէ Մամիկոնեանի ու մասնակից Օշականի բերդի կռիւները Մազքութներու դէմ մղուած ու շահուած պատերազմին (Հմմտ. վերը եւ Բուզ., էջ 17): Տէր է Ռշտունեաց (անդ, էջ 183): Աճառեան կը նկատէ զինքը «փեսայ Մամիկոնեանց» եւ է՛ իսկ (Հայոց անձնանունների Բառարան, Ա., էջ 144): Նա կ՚ամուսնանայ Վարդան ու Համազասպեան Մամիկոնեաններու Համազասպուհի քրոջ հետ, որ քոյրաթիւ էր (հաւանականաբար՝ խորթ քոյր, հմմտ. Մ. Աբեղեան, Աշխարհաբար թարգմանութիւն Փ. Բուզանդի Պատմութեան, Երեւան 1947, էջ 334), Վահան Մամիկոնեանի. «Այս Գարեգին փեսայ լեալ էր յա—

ռաջ նորին Համազասպէի, գերդը նորին Համազասպուհի ունէր կին» (Բուզ., էջ 249. Համմ. էջ 183): Երբ Պարսիկներու Շապուհ Թագաւորը Հայաստան կ'արշաւէ Գարեգին իր կինը կը Թողու եւ կը փախչի (անդ, էջ 183): Ազգային պատմութեան եւ մանաւորապէս Բուզանդեան Պատմութեան յուզիչ ու գրաւիչ էջերէն է Համազասպուհիի նահատակութեան դրուագը եւ կ'արժէ զայն անգամ մը եւս ընթեռնուլ, սակայն աշխարհաբարի վերածելով. «Այնուհետեւ Վահան Մամիկոնեան ու Մերուժան Արծրունի, այս երկու պիղծ, անօրէն եւ դժնեայ մարդիկ, որոնք աստուածապաշտութեան ուխտէն հրաժարած էին եւ ուրացութեամբ յանձն առած էին ու կը պաշտէին Մազդեզական անօրէն կրօնը, սկսան Հայոց աշխարհի մէջ, բոլոր գաւառներու մէջ, ամէնուրեք քրիստոնեաներու աղօթավայրերը ու եկեղեցիները աւերել ու քանդել: Եւ շատ մարդիկ, որոնք իրենց ձեռքը կ'իյնային՝ կը ստիպէին աստուածպաշտութիւնը Թողուլ ու Մազդեզական կրօնն ընդունիլ: Ապա Վահան եւ Մերուժան կը հրամայէին բերդերուն այն կիները՝ որոնց ամուսինները՝ նախարարները, զիրենք Թողուցած ու փախած էին, ստիպել՝ որ Մազդեզական կրօնին դառնան եւ չհամաձայնելու պարագային՝ բոլորն ալ չարաչար մահով մեռցնել: Բերդապահները այս հրամանը ստանալով՝ իւրաքանչիւրը իր մօտ գըտնուածը՝ կը նեղէր ու կը ստիպէր հրամայա-

ծին համաձայն...։ Իսկ Վահան (խորթ) քոյր մ'ունէր, Մամիկոնեան տոհմէ, քոյրը Վարդանին, Համազասպուհի եւ անիկա Ռշտունեաց գաւառին տիրոջ Գարեգինին կինն էր։ Անոր ամուսինը Գարեգին՝ Պարսիկներու թագաւորին Հայաստան եկած ժամանակ՝ փախած էր [7]։ Իսկ ինքը Ռշտունիներու տիկինը Տոսբ գաւառին Վան քաղաքին միջնաբերդին մէջ կը մնար։ Անորէն Վահան ու Մերուժան հրաման կու տային բերդապահին՝ տիկինը նեղել, եթէ յանձնառու չըլլար Մազդեզաններու կրօնին ու զինքը բարձր աշտարակէ կախել ու մեռցնել։ Երբ Համազասպուհին չընդունեցաւ Մազդեզական կրօնը, զինքը հանեցին բարձր աշտարակին վրայ, որ կը գտնուէր ժայռին բարձր գագաթին վրայ, ետեւի կողմէն ծովակին դարձած։ Զինքը մերկացուցին՝ ինչպէս մօրմէն ծնած էր ու ոտքերուն կապ անցնելով՝ բարձր կողմէն (զինքը) կախեցին ու այսպէս՝ կախաղանի վրայ մեռաւ» (Պատմ., էջ 183 ու 249—250)։ Քաջ վկայուհիին մարմինը երկարատեւ կախուած կը մնայ եւ ժամանակի ընթացքին կը նեխի ու կը քայքայուի։ Անոր ոսկրները դայեակը կը հաւաքէ — օրերով սպասելով անոնց թափուելուն — եւ կը տանի ազգականներուն մօտ, որոնք անոնց վրայ արցունք ու ծաղիկ ցանելով՝ զանոնք եկեղեցւոյ մը

7 Թ. Արծրունիին համաձայն «Անձնապուրծ գնաց փախստեայ առ կայսրն Յունաց» (Պատմ., էջ 63)։

մէջ կ'ամփոփէն. ու յետագային Զորոյ վանքին մէջ կը դրուին (Թ. Արծ., էջ 63)։

Տարինէր վերջ Վարազդատեան–Մանուէլեան (Մամիկոնեան) մրցամարտի դաշտին վրայ՝ Համազասպ Մամիկոնեան[8] դիակներու եւ վիրաւորներու մէջ կը հանդիպի իր փեսային՝ Գարեգինին, «որ ողջ կայր, զի ոչ խոց էր եւ ոչ վնասեալ ինչ» (Բուզանդ, էջ 249)։ Եւ որ՝ իրմէ նժոյգ կը խնդրէ հեծնելու համար։ Սակայն ինչո՞ւ դիակներու մէջ. որքան կ'երեւայ պահուըտելու համար ու տեսնելով զՀամազասպ՝ ինքզինքը կը յայտնէ անոր։ Նա՝ Վարազդատեան բանակին մէջ է, ուստի եւ Թագաւորին կողմնակից։ Համազասպ կը հրամայէ վահանաւորներուն զինքը վահաններու տակ պահել ու թաքցնել. գուցէ յետոյ անոր դատը տեսնելու դիտաւորութեամբ։ Սակայն սպասակիրներու զամայեալը «եհար զթուրն մատուցեալ ի նա, պատառ պատառ կոտորեալ անդէն ցրեալ սատակեաց զնա»։ Կը խորհիմ՝ որպէս զի ետքէն Համազասպ իբրեւ իր փեսային հանդէպ — Համազասպուհիին սիրոյն համար — բարեացակամ չգտնուէր (անդ, էջ 249—250)։

—

[8] Մ. Աբեղեան կը սրբագրէ՝ Համազասպեան Մամիկոնեան աներորդի Գարեգին Ռշտունիի (Աշխարհաբար թարգմանութիւն Փ. Բուզանդի Պատմութեան, Երեւան 1947, էջ 280 եւ 340)։

Մովսէս Խորենացիին անծանօթ է Գաբեղին Ռշտունին։ Իսկ թէ ի՛նչ առնչութեամբ Մեհենդակի անունը կը յիշէ՝ նկատի առինք։ Նա Բարզափրանէն յետոյ Ռշտունիներու տոհմէն կը ներկայացնէ Մաճաճիհր կամ Մաճաճիհրի[9], որ «այր չար եւ անզգամ է», ինչպէս Բուզանդ կ՚աւանդէ, սակայն գոռ պատերազմող է ու քաջ։ Տրդատ Մեծ Պարսիկներու վրայ ապստամբած ատեն՝ իր բանակներու առաջնորդութիւնը կը վստահի չորս զօրավարի, որոնցմէ մին է՝ Մանաճիհր (Պատմ., էջ 357· հմմտ. եւ Ստ. Ասողիկ, էջ 68)։ Նոյն պաշտօնը Ռշտունի նախարարը յառաջ կը վարէ անոր յաջորդին — Խոսրով Կոտակի — թագաւորութեան միջոցին։ Կիլիկեցի զօրքերով կը չուէ Ասորեստանի եւ Միջագետքի կողմերը։ Այդ տեղերը Բակուր բդեշխին հետ պատերազմի բռնուելով՝ անոր կը յաղթէ։ Իսկ անոր որդին — Հեշայ — գերելով՝ «երկաթի կապանօք» կ՚առաքէ Խոսրովի ու երկրին գրաւումն ու գերփումը կը շարունակէ։ Ապա Յակոբ Մծբնացի հայրապետին ութը սարկաւագները[10] կալանաւորած՝ խուռն բազմութեամբ ու աւարով Հայաստան կը վերադառնայ։ Հայրապետը դե-

---

[9] Մանաճիհր անունը գրուած է նաեւ՝ Մանաճեհր (Բուզ., էջ 25), Մանաճեղ, Ծապուհ Բագրատունի, Պատմութիւն Հայոց (Էջմիածին 1921, էջ 29), Մանաճ (անդ, էջ 37)։

[10] Յակոբ Մծբնացւոյն վարքին մէջ կայ «Մանաճիհր Ռշտունի աւարի առ զվիճակ սրբոյն եւ դնէր զերկոտասան սարկաւագունսն ի բերդին Մանազկերտ կոչեցեալ» (Սոփերք, ԻԲ., էջ 55)։

րիներուն ազատութիւնը կ՚ակնկալէ ու կը խնդրէ: Սակայն Մանածիհր կը մերժէ ու գաւառականներու սադրանքով՝ ութը սարկաւագները դարահոս ծովամոյն ընել կը հրամայէ: Ասոր վրայ հեզահամբոյր եպիսկոպոսին բերնէն այս անգամ անէծքը լսելի կ՚ըլլայ ու այն նետի պէս ծանրապէս կը հարուածէ[11] (Խոր., Պատմ., էջ 357, 407, Ասողիկ, Պատմ., էջ 68, 66, 67):

Բուզանդի համաձայն Մանածիհր անգթութիւններով սարսափ կ՚ազդէ ու Յակոբ Մծբնացին անոր կը ներկայանայ: Կը յորդորէ զինքը ժողովուրդին հետ մեղմաբար վարուելու եւ անասնաբարոյ ու գազանային կատաղութենէն հեռանալու: Սակայն անիկա բացարձակապէս կ՚ընդդիմանայ եւ «Իբրեւ նմա հեճուկս առնելոյ» ութը հարիւր հոգի — առանց որեւէ յանցանքի պարտապան — ծովը թափել կը հրամայէ: Նմանապէս հրաման կ՚արձակէ զինքն ալ երկրէն հալածելու եւ հանելու: Հայրապետը ոտքի փոշին թափ կու տայ եւ կը հանէ երկաթահատներու եւ կապարահատներու լեռը: Այդ Ընձաքիսարն է, որուն կատարէն ամբողջ գաւառը կը տեսնէ ու կ՚անիծէ՝ «Զի մի պակասեսցի անտի խռովութիւն մինչեւ ի սպառ»: Անէծքին դժբախտ հետեւանքովը Մանածիհրին կինն ու եօթը զաւակները կը մեռնին: Յետոյ

---

[11] «Եթէ անէծ՝ (Յակոբ) արձանացաւ» (Նարեկացի Գր. Ներբող Յակոբ Մծբնացւոյ, տես Մատենագրութիւնք Գ. Նարեկացւոյ, Վենետիկ 1840, էջ 445):

եւ «ինքն չարամահ ծակոտեալ ելանէր մեծաւ տանջանօք յաշխարհէ եւ ըստ բանին որ ասացաւ ոչ եղեւ խաղաղութիւն յաշխարհին յայնմիկ յօրէն յայնմանէ եւ յապա» (Բուզ., էջ 24—26):

Փաւստոսին եւ Խորենացիին պատմածներուն մէջ բաւական մեծ տարբերութիւն կայ: Խորենացին, ինչպէս նկատուեցաւ, Մանաճիհր «զօրավար հարաւային կողման» կը նշանակէ, մինչ Փաւստոս զինքը կը կոչէ «մեծ իշխան, աշխարհատէր, մեծ ծառայ արքային Հայոց» (Հմմտ. Դաղպաշեան, Փ. Բիւզանդացի եւ իր պատմութեան խարդախողը, Վիեննա 1898, էջ 39): Խորենացին Բակուրին դէմ պատերազմող միայն Մանաճիհր կը ճանչնայ, մինչդեռ Փաւստոս քանի մը զօրավարի անուններ կը շարէ (Բուզ., էջ 21): Խորենացիին համաձայն Բակուրին որդին Ուշտունի զօրավարէն ձերբակալուած Խոսրովի կ՚առաքուի, մինչ Բուզանդի համեմատ նա — Խեշայ կամ Հեշայ — Վաչէի մօտ կ՚ապաստանի եւ ապա հօրենական հողերը կը ժառանգէ (Հմմտ. վերը):

Խորենացին Բուզանդի ութը հարիւր դերուածներու փոխարէն ութը ջրամոյն սարկաւագներ կը ներկայացնէ:

Խորենացին ընդարձակօրէն կը պատմէ Մանաճիհրհի մահն ու Յակ. Մծբնացիին անէծքին հետեւանքները (էջ 410—411), մինչ Փաւստոս հակիրճ տողերով կը գոհանայ (էջ 25):

Մանաճիհր Ռշտունիի մահէն յետոյ «Սպարապետ էր Հայոց հարաւային գնդին Զօրայ» (Խոր., էջ 424), որ Մեհենդակի եղբայրն է (անդ, էջ 427) ու հաւանօրէն Մանաճիրհի որդին, քանի որ անոր պաշտօնը կը ժառանգէ: Գուցէ կարելի ըլլայ նմանապէս խորհիլ՝ թէ Զօրայ, Մեհենդակ, Գարեգին ու Մանաճիհր իրարու եղբայրներ եղած ըլլան: Սակայն առաջին վարկածին համար Բուզանդի խօսքը քիչ մը հակառակը կու գայ փաստելու — բայց կարելի՞ է զայն դիւրաւ տառացի առնուլ — թէ Մանաճիրհի կինը իր եօթը զաւակներով մեռաւ (Բուզ., էջ 25): — Նաեւ այժմէն պէտք եմ ուշադիր ընել՝ որ Մովսէս Խորենացին է միայն որ Զօրայի անուն[12] ու գործը մեզի կ'աւանդէ (Պատմ., էջ 424):

Արդ՝ նա կը հաղորդէ. Հայաստանի լուսատու աստղերէն մին եւս կը խաւարի — Յուսիկ հայրապետը զանահար կը մեռնի[13]

---

[12] Հր. Աճառեան (Հայոց անձնանուններու Բառարան, Բ., էջ 220) Զօրայ (գրուած նաեւ Զուրայ) զօրավարը՝ Մանաճիրհի որդի կը նշանակէ:

[13] Բուզանդի համաձայն (էջ 29—32) Տիրան թագաւորը Յուսիկ հայրապետը սպաննել կը հրամայէ, որովհետեւ զինքը կը յանդիմանէ եւ թոյլ չի տար եկեղեցի մտնելու (կը յիշեցնէ Ս. Ամբրոսիոսի ու Թէոդոս Մեծի դէպքը), մինչ Խորենացին կը հաղորդէ՝ թէ Յուսիկ չի թոյլատրեր Յուլիանոս Ուրացողին «կանգնել զպատկերն» եկեղեցւոյ մէջ եւ այս պատճառով կը սպաննուի (էջ 423): Հ. Յ. Գաթըրճեան շատ լաւ մտադիր կ'ընէ՝ «Այլ եթէ ընթացից ժամանակացն միտ դնիցեմք չմարթի ունել Տիրան գործ ընդ Յուլիանոս եւ յայն սակս դէպքն որ կից ընդ նմին են՝ կամ ի յաջորդ անդր Տիրանայ հային եւ կամ յայլոց իմն պատ-

(անդ, էջ 423)։ Հայ աւագանին ու նախարարները աթոռ վրայ կը դառնանան։ Այս երկու տխուր լուրերը կը հասնին Զօրայի ականջը։ Նա Տիրան Թագաւորէն հրաման առացած էր Յուլիանոս Ուրացողին օժանդակելու եւ պատերազմը Պարսիկներու դէմ արդէն հրատարակուած էր։ Զօրայ այս իրադարձութիւններու տեղեկանալէն յետոյ՝ իր զինուորները կը յորդորէ Հայ Թագաւորին դէմ ըմբոստանալու։ Անոնք պատրաստ ու համամիտ կը ցուցնեն հետեւելու եւ նա Տմորիք գալով՝ հոն սպասողական վիճակի մէջ կը մնայ — ուշադիր՝ միւս նախարարներու ընելիք դիրքին։ Յուլիանոս անոր արարքին իրազեկ, խնդիրը արագօրէն կը հասցնէ Հայկական արքունիքը եւ ահա՝ Տիրան կատղելով Զօրայի վրայ կը յղէ Հայր Մարդպետը, որ զինքը երդումով իր մօտը կը հրաւիրէ։ «Իսկ զօրաց նորա տեսեալ թէ լռեալ կան ամենայն նախարարքն... ցրուեցան ի տունս իւրաքանչիւր։ Եւ միայնացեալ Զօրայ գայ առ արքայ յոչ կամաց եւ արքայ զԶօրայ ի բուռն հարեալ ունի եւ զամուրն նոցին զԱղթամար. եւ բառնայ զամենեսին սատակմամբ։ Բայց զմանուկ մի որդի Մեհենդակայ եղբօր նորա փախուցեալ դայեկացն ապրեցուցին։ Իսկ արքայ փոխանակ նորա կարգէ

---

ճառագ ունին զծագումն» (Տիեզերական Պատմութիւն, Բ., Վիեննա 1892, էջ 488. հմմտ. եւ Դաղպաշեան, Փ. Բիւզանդացին եւ իւր խարդախողը, Վիեննա 1898, էջ 9—59)։

զՍաղամուտ տէր Անձտայ» (Խոր., Պատմ., էջ 426—427. Հմմտ. Սաղամուտի մասին Բուզ., էջ 164)։ — Դաղբաշեան կտրուկ կ'արտայայտուի՝ «Զօրայի ապստամբութիւնը սուրբ Յուսկան մահուան պատճառով եւս սուտ եւ հնարովի է» (Փ. Բիւզանդացի եւ իր խարդախողը, էջ 58)։

Ուշտունիներու կոտորածի պատմութիւնը Բուզանդ եւս կ'աւանդէ։ Հայոց պատմութեան տխուր էջերէն են նախարարական ու ազնուազարմ սերունդներու ջնջումներն ու քայքայումները։ Մէկ տան առաւելութիւնն ու փառքը՝ միւս տան նախանձը կը յուզէր։ Մէկ տոհմին քաջարի զաւակներ ունենալը՝ թագաւորական եւ իշխանական ուրիշ գարմին ահ կ'ազդէր։ Մէկ գերդաստանի շատ ու բարեբեր կալուածներու սեպհականութիւնը՝ միւսին անհաճոյ էր։ Հետեւաբար պէ՛տք էր տկարացում ու կործանում։ Տրդատ Մեծին յաջորդներու քաղաքականութիւնը այս էր՝ գլխաւոր միջոցը այս էր։ Փոխանակ իրենք զօրաւոր ըլլալու, որ կարենային ուրիշին վրայ իշխել, իրենք տկար էին եւ վատ սիրտը անպատիւ միջոցէ չէր խորշիր։ Նմանապէս նախարարներու իրարու հանդէպ նախանձն ու քսութիւնը ազնուական գարմերու մէջ երկպառակութեան ծնունդ տուած են ու զանոնք բնաջնջելու առաջնորդած։ Ահա այսպիսի տխուր դրուագ մը Ուշտունիներու նախարարութենէն։

Յակոբ Մծբնացի հայրապետին անձերը Ռշտունիներու վրայ կարծես կապարանման կը ծանրանայ եւ խաղաղութիւնը անկէ կ՚արտաքսուի: Հայր Մարդպետը «այր ներքինի եւ չարասիրտ, չարագործ եւ չարախորհուրդ... եւ քսութեամբ կոտորել առանց վնասու... բռնայրին ի միջոյ առանց ամենայն վնասու եւ յանցման» (Բուզ., էջ 47) Ռշտունիներու եւ Արծրունիներու տոհմերը: Իգական սեռին անգամ խնայողութիւն չըլլար: Բուզանդ կը գրէ՝ «Տայր խրով չարախօսութեամբ հանել ընդ սուր եւ անունդ առնել» (էջ 47) վերջին բառը պէտք է սրբագրել՝ անսերունդ առնել ու կամ գուցէ՝ անանուն առնել:

Երկու երեխաներ եւ այն՝ նոյն իսկ դեռ ծծկեր՝ Տաճատ Ռշտունի (որդի Մեհընդակի[14]) եւ Շաւասպ Արծրունի (որդի Վաչէի) իրենց դայեակներու մօտ գտնուելով՝ սուրին բերանը չեն իյնար բարեբաստօրէն: Սակայն անոնք եւս կը բռնուին եւ Տիրան թագաւորին առջեւ կը հանուին: Եւ նա կը հրամայէ այդ անմեղ մանուկներու գլուխները իրաններէն բաժնել: Սակայն ահա Մամիկոնեան ազատարար նախարարներ — Արտաւազդ ու Վասակ — զանոնք իրենց անութներու տակ առած՝ կը փախցնեն: Զանոնք մեծցնելով ու զարգացնելով՝ անոնց կու տան

14 Թովմաս Արծրունին կը գրէ «Յափշտակեցին... զՄեհէնդակ Ռշտունի... առին գնացին յամուրն Տայոց» (Պատմ., էջ 60):

իրենց աղջիկները ու այսպէս՝ անոնց սերունդին շարունակութեան կը նպաստեն — ամէն հնարաւոր ու ազդու միջոցներով: — Կոտորածը տեղի կ՚ունենայ Տիրանի թագաւորութեան վերջին շրջաններուն, գուցէ 345էն յետոյ:

Բուզանդ եւ Խորենացի իրարմէ կը բաժնուին ու կը հեռանան Ռշտունիներու կոտորածի պատճառին մէջ: Առաջինը՝ քսութիւնը եւ երկրորդը՝ անհաւատարմութիւնը պատճառ կը հաղորդէ: Իսկ երկուքն ալ կու գան կը միաբանին՝ թէ տոհմը բոլորովին կ՚անճխուի եւ կը մնայ միայն մէկը — Տաճատ: Բայց այնպէս եւս կարելի է գուցէ եզրակացնել՝ թէ Ռշտունեաց կոտորածէն կ՚ազատին նաեւ Մեհեն(դակ) ու Գարեգին Ռշտունիները, որոնց առաջինը՝ Վաղէս կայսեր գացող նախարարներու թուին մէջ է (Բուզ., էջ 109) ու երկրորդը՝ Վարազդատեան-Մանուէլեան պատերազմի ատեն կը սպաննուի (Բուզ., էջ 249. հմմտ. եւ վերը): Իսկ Բուզանդի խօսքը՝ թէ սուրը էգերուն անգամ մերձեցաւ՝ կարելի է իբրեւ սաստկացուցիչ առնուլ եւ խորհիլ՝ թէ կոտորածը շատ անողորմ կերպով տեղի ունեցած ըլլայ[15]:

Վերյիշեալ եզրակացութեան գալու շարժառիթն է ժամանակը — հայ թագաւորներու

---

[15] Այդ նախարարութիւններու ջնջումի մասին հմմտ. նաեւ Գարագաշեան, Քննական Պատմ., Բ., էջ 35—36 եւ Markwart J. Südarmenien und die Tigrisquellen, nach griechischen und arabischen Geographen. Wien 1930, էջ 59*—61*:

ընկալեալ տարիներու (այս է՝ թուականներու) եւ իրերու յաջորդութեան ընթացքը:

Կը թագաւորեն՝

Տիրան՝ 342—350 [16]:
Արշակ՝ 350—369:
Պապ՝ 369—374:
Վարազդատ՝ 374—377:

(Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ., էջ 487—515 եւ Հ. Մ. Տէր Մովսէսեան, Պատմութիւն Հայոց, Բ., էջ 28—80:)

Արդ եթէ Տիրան 345ի ատենները կոտորեց Ուշտունիները՝ նոյն ժամանակ դեռ կաթնակեր Տաճատի մը որդին Մեհենդակ եթէ ունեցած էր որդի — ամէնէն ուշը — 369ին չէր կրնար Վաղէսի երթալ — զի մանուկ մանկատի էր: Դարձեալ՝ նոյն շրջանին դեռ կաթի կարօտ Տաճատի մը զաւակը՝ Գարեգին — եթէ ունեցած էր այդ անունով որդի մը — չէր կարող Վարազդատեան — Մանուէլեան պատերազմին մասնակցիլ ու անկէ յառաջ ալ Համազասպուհիի հետ ամուսնանալ:

---

16 Այս թագաւորներու եւ անոնց նախորդներու ժամանակները ու անոնց վերագրուած դէպքերը կարեւոր փոփոխութիւններու կ'ենթարկուին, երբ օտար պատմագրութիւնը եւս նկատի առնուի եւ պէտք է նկատի առնուլ (հմմտ. Գաթըրճեան, Տիեզ. Պատմ., Բ., էջ 481—515 եւ Հ. Ն. Ակինեան, Մխիթար Տօնագիրք, Վիեննա 1949. էջ 27. ուր եւ օտարազգի թագաւորներու եւ հայ կաթողիկոսներու գահակալութիւններու ժամանակները):

Համանման է եւ Արծրունիներու պարագան: Շաւասպ Արծրունին իր տոհմին — 345ին — կոտորածէն միակ կաթնակեր մնացորդն է (Բուզ., էջ 118), որ չարամիտ քան նախորդ հայր մարդպետները՝ Հայր Մարդպետը նենգաւոր ըլլալով՝ կը սպաննէ (Արշակ Թագաւորի օրով)։ Համարինք ամէնէն ուշը 369ին, երբ 24 տարեկան էր: Ուստի եւ ի՞նչ խորհիլ, երբ Աբեղեան կը գրէ՝ «Այս Շաւասպի որդին է անշուշտ Մերուժանը, որի կատարած չարիքները մանրամասն պատմում է Փաւստոսը» (Թրգմ. նոյնին պատմութեան, Երեւան 1947, էջ 326) եւ այլուր՝ «Մերուժան Շաւասպի որդին էր (անդ, էջ 342): Կարելի՞ է մտածել՝ որ 345ին մանուկ Շաւասպի մը որդին Արշակի օրով այնքան հայրենադաւ գործեր ընէր եւ երեւան գար իբրեւ գոռ ու ճարտար մարտնչող: Եւ նա Մերուժան Մանուէլ Մամիկոնեանի հետ Աւանի մերձ կ'ոգորի ու Բաբգէն Սիւնիէն կը սպաննուի: Անոր գլուխը մարմինէն կը բաժնեն ու Հայոց Զարմանդուխտ Թագուհիին բանակը կը բերեն: Անոր շուրջը հաւաքուած տիկինները կը կարծեն՝ թէ Սամուէլ Մամիկոնեանի գլուխն ըլլայ. զի Սամուէլ ու Մերուժան իրարու շատ նմանութիւն ունէին եւ երբ կը ստուգուի թէ վերջինինն է, կ'ըսեն — Մեր եղբայրն է: Կը չեշտուի խնամիութիւնը (Բուզ., էջ 263):

Այս ամէնէն կարելի է շատ հաւանական եզրակացութիւն հանել՝ թէ Ռշտունիներէն

(ու Արծրունիներէն) բաց ի Տաճատէն (ու Շաւասպէն) ուրիշ ազատուածներ ալ եղած էն եւ կամ ժամանակի անջրպետը պէտք է՝ ընդլայնել ու այնպէս իրերը մեկնել ու գաւազանածառը կազմել — աւելի ճիւղաւոր։

Բաւական ժամանակ յետոյ՝ Վարդանանց շրջանին՝ մինչ Ռշտունեաց գաւառին եկեղեցական դասը՝ գլխաւորուած Սահակ եպիսկոպոսով եւ վերջաւորուած Քաջաջ սարկաւագով՝ Հաւատքի ու նմանապէս ազգային ազատագրումի համար միաշունչ ու համամիտ կը գործէ եւ արիւնէ չ'երկնչիր, իշխանական տունը բաւական տարբեր ընթացք կը բռնէ։ Այդ ժամանակ Ռշտունիներէ յականէ յանուանէ կը յիշուի՝ Արտակ։ Անոր անունը Արտաշատի ժողովին (449) մասնակցողներուն ցանկին մէջ չկայ, ուստի եւ կարելի է ենթադրել՝ որ նա բացակայ էր, զի ներելի չէ մտածել՝ թէ այսպիսի տոհմի մը ներկայացուցիչը անյիշատակ ձգուած ըլլայ։ Մանաւանդ որ Փարպեցին ու Եղիշէն անոր անունը շեշտած են Պարսկաստան գացող նախարարներու շարքին մէջ (Փարպ․, էջ 144․ Եղիշէ, էջ 76)։

Հայ աւագանիին Հայաստանի մէջ դաւանած ամուր Հաւատքը՝ Պարսկաստանի մէջ կը տկարանայ՝ «Միաբանեալք ամենեքեան յանձն առնուին կատարել խաբէութեամբ զհրաման թագաւորին եւ երթեալք ի տուն մոխրանոցին կէսքն ի նոսա ցուցանէին, այլ ոչ ամենեքեան, պատճառանօք եւ ոչ ճշմար-

ութեամբ զխոնարհումն գլխոյ իւրեանց անոտի պաշտաման։ Եւ ոմանք թէպէտ եւ գիտէին զանյարական զլորումն, այլ ցանկացողք աշխարհին փառաց՝ փոխանակեցին զփառս անեղծին Աստուծոյ ընդ եղծանելի եւ անցաւոր կենաց աշխարհիս» (Փարպ․, էջ 165)։ Այս վերջին դժբախտներու խումբն է — Եղիշէի աւանդութեան համաձայն (էջ 172—173)։ — Արտակ Ռշտունի, որ Վասակ Սիւնի մարզպանին ծրագիրներու հետեւող ու անոնց գործադրութեան հետամուտ է։ Սակայն թէ Աւարայրի ճակատամարտին (451) Վասակեան ու պարսկական բանակին մէջ գտնուած ըլլայ, այդ չէ յիշուած։ Բայց ուխտապահ Վարդանեաններու թեւ ու թիկունք կ՚ըլլայ «Զօրքն Ռշտունեաց» (Եղիշէ, էջ 172—173․ Թ․ Արծ․, էջ 78․ Ալիշան, Այրարատ, էջ 428)։

Ղ․ Փարպեցին Արտակի համախոհութիւնը Վասակի հետ[17] (էջ 209) եւ Ռշտունիներու մասնակցութիւնը Տղմուտ գետի մերձ մղուած

---

[17] Վասպուրականէն, որուն գաւառներէն էին Ռըշտունիք, Պալունիք եւ Ակէ, հաւատուրաց եւ Վասակեան քաղաքականութեան համամիտ կը յիշուի «իշխանն Պալունեաց Վարազշապուհ», որ Աւարայրի ճակատամարտէն յետոյ Հմայեակ Մամիկոնեանի դէմ ղրկելու բանակին զօրագլուխ կը դրուի Արտէն Գարեղեանի հետ (Ղ. Փարպ․, էջ 135. 209. 231․ Եղիշէ, էջ 137, 173)։ Մինչդեռ Արտակ Պալունին Վարդան Մամիկոնեանին համախոհ է եւ Աւարայրի պատերազմին մասնակից եւ 57 մարտիկով կը նահատակուի (Եղիշէ, էջ 185 եւ 225)։ Իսկ Ակէացիներէն ուխտադրուժ է Ընջուղ, մինչդեռ նոյն տոհմէն ուրիշներ Տղմուտ գետի մօտ հաւատքի համար կը կռուին (Եղիշէ, էջ 173 եւ 186)։

*պատերազմին մէջ՝ առանց յիշատակութեան կը թողու (էջ 225—227)։ Նաեւ ոչ Փարպեցին եւ ոչ Եղիշէն սոյն պայքարէն յետոյ կալանաւորուած ու Պարսկաստան տարուած նախարարներու ցանկին մէջ Ռշտունիի անուն ներհիւսած են (Փարպ., էջ 326—327, 273. Եղիշէ, էջ 369)։ Զոյգ Պատմագիրներու աւանդածներէն այնպէս կը թուի՝ թէ Վարդանեան շրջանի Ռշտունեան նախարարութիւնը ժամանակին տագնապաշատ հարցերուն շուրջ շատ հետաքրքրութիւն չի ցուցներ եւ աւելի բացասական դիրքի մէջ կը մնայ։*

*Նմանապէս Վահանեան շրջանին՝ Ռշտունիները անտարբեր դիրք կը բռնեն եւ Վահանի հրաւէրին չեն հաճիր ընդառաջել (Փարպ., էջ 410 եւ 412)։ Հարկաւ եղած պիտի ըլլան կարեւոր պատճառներ, որոնք Ռշտունիները այս ժամանակներու քաղաքական գործունէութենէ հեռու պահած են ու զանոնք կրօնական ու ազգային շահերը պաշտպանելու չեն մղած։ Նաեւ՝ չէզոք մնալու յորդորած։ Սակայն Ռշտունի նախարարութեան հաւատքի հանդէպ բռնած դիրքը այնքան բացասական չէ եւ մանաւանդ թէ գովելի, երբ նկատուի՝ որ անոր ներկայացուցիչները կան Աւարայրի ճակատամարտին վրայ եւ* Մանաճիհր Ռշտունին *Ատոմեանց հետ կը նահատակուի եւ Ոչխարանց վանքին մէջ անոր նշխարները կ'ամփոփուին։ Նա Շահապիվանի ժողովին ալ ներկայ է եւ (որ հե-*

*տաքրքրական է) իբրեւ «սպարապետ» կը յիշատակուի (Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 519. նոյնը՝ Հայապատում, Վենետիկ 1901, Բ., էջ 160. Հ. Մ. Աւգերեան, Լիակատար Վարք եւ վկայաբանութիւն սրբոց, Բ., Վենետիկ 1811, էջ 66—76 եւ 89. դարձեալ՝ Գնունիներու մասին գրած յօդուածս. հմմտ. եւ Հանդ. Ամս. [Մխիթար Տօնագիրք], 1949, էջ 79—170՝ Շահապիվանի ժողովի կանոնները, ուր էջ 90՝ Հ. Ն. Ակինեան կ՚արտայայտուի «Բ. եւ L. օրինակներու մէջ պահուած է այն հատուածը, որ ժողովի մասնակից եպիսկոպոսներու, երէցներու եւ իշխանաց անունները կը յիշուին, որ հաւատք չի ներշնչեր հարազատ, սկզբնագրին մաս համարելու»: Բանասէր Հօր այս տողերը նկատողութեան արժանի են):*

*Լէօ՝ Ռշտունի ու Խորխոռունի նախարարութիւններու պառակտումը — մասով մը՝ Վարդանի եւ մասով մը՝ Վասակի կուսակից — նկատի ունենալով՝ կը գրէ «Այս՝ պարագապէս ցոյց է տալիս, որ միեւնոյն տոհմի իշխողները սատացել էին կամ պիտի ստանային Պարսից կառավարութիւնից աւելի պատիւ եւ կալուած եւ այս՝ ի հաշիւ միւս մասի տոհմակից միւս իշխանի: Այսպիսի միջոցներով էր սանձւում այն երկպառակտուած դրութիւնը, որ նոյն Եղիշէն ներկայացնում է այսպիսի խօսքերով «Զնախարարեանն բանսարկութեամբ արկ ընդ միմեանս եւ յամենայն տունս արար խռովութիւն» (Պատմ. Հայոց, Բ., Երեւան 1947, էջ 57): Հ. Ն. Ակինեան*

*այս նկատմամբ կը գրէ՝ «Զարմանալի է սակայն Խմբագիրը։ Անիկա Ռշտունեաց իշխանը կը ներկայացնէ համամիտ Վասակայ, բայց զօրքն Ռշտունեաց կը կռուի Աւարայրի առջեւ իբրեւ Վարդանայ զինակից...։ Յայտնապէս կը տեսնուի թէ Խմբագիրը Սկզբնագրին մէջ նախարարներու բոլորովին ուրիշ խմբաւորում մ՚ունէր քան զոր Ղազար կը ներկայացնէր 450ի համար» (Եղիշէ վարդապետ եւ իր պատմութիւնն Հայոց պատերազմի, մատենագրական–պատմական ուսումնասիրութիւն, Բ. մաս, Վիեննա 1936, էջ 731—732 եւ համմտ. էջ 730)։*

*Հոս կարելի չէ աննկատ թողուլ Թովմաս Արծրունի Պատմագիրը։ Անոր աւանդութեան համաձայն Վարդան Մամիկոնեանին համամիտ ու անոր օգնական է Վահան Արծրունիի եւ Վահրիճ Անձեւացիի հետ՝* Տաճատ *Ռշտունին։ «Վարդան փութացոյց գիր պաղատանաց առ Տաճատ Ռշտունեաց տէր եւ առ Վախրիճ Անձաւացեաց տէր զեկուցանել նոցա զեղելոյն։ Եւ նոքա թափանակի*[18] *անյապաղ հանդերձ իւրաքանչիւր զօրու եկին առ մեծն Վարդան... եւ յանկարծօրէն յեղակարծ արագութեամբ հասին ի վերայ Շահապայ եւ մարզպանին Վնդոյի...։ Իսկ Տաճատ եւ Վախրիճ ի մէջ փակեալ զմարզպանն եւ զորդի նորա զՇիրոյ ձերբակալ արարեալ ածեն ի Դուին եւ հուր կրակարանին բորբո-*

---

[18] *Արտագրելի՝ փութանակի (Հասկ, ամսաթերթ,* 1951, *էջ* 48)։

քեալ ապտուածակէզ արարին զնա Որմզդական մեհենին եւ զՃիրոյ կախեն զփայտէ ի վերայ կրակարանին եւ զարին զետաղէժս եւ արախողս արարեալ վառնեն... եւ ինքեանք զառնան յաղթութեամբ» (Պատմ., էջ 78):

Թովմաս Արծրունիին այս ու սոր նման պատմածները իբրեւ թէ Աբրահամ Խոստովանողի «Համառօտութիւն»ի եւ Եղիշէի մէջ գտնուած ըլլան ու յետոյ չարամտութեամբ (Բարձումայի) դուրս» հանուած: Այս մասին բաւական շատ արդէն գրուած է. հմմտ. Երկրագունդ 1888, էջ 14—26. Բ. Վ. Կիւլէսէրեան, Եղիշէ քննական ուսումնասիրութիւն, Վիեննա 1909, էջ 118—133. Հ. Ն. Ակինեան, Եղիշէ վարդապետ, Ա., Վիեննա 1932, էջ 21 եւ Բ., Վիեննա 1936, էջ 772—773. Լէօ, Պատմ. Հայոց, Բ., էջ 47 եւ Քառունի Եղիայի յօդուածը «Հասկ» Ամսաթերթի մէջ 1951, էջ 47—53, ուր նա այս պատմուածները Բ. Վարդանանցին (572) հանդիպած կրնան եղած ըլլալ, կը համարի:

—

Վարդանեան-Վահանեան շրջաններէ վերջ՝ Բաբգէն Ա. Կաթողիկոսին (490—516) Պարսկաստանի եպիսկոպոսներու գրած թղթին ստորագրողներէն մին է՝ Ատրներսեհ Ուշտունի նախարարը (Գիրք Թղթոց, էջ 42): Այսպէս՝ միայն իր անունը հասած է մեզի:

Ժամանակի երկար անջրպետէ յետոյ Մժէժ Գնունիին իշխանութենէն ետքը՝ Հայաստանի վրայ մարզպան կ՚ըլլան Պարսիկ-

ներ, որոնցմէ Դենչապուհ, ինչպէս կը հաղորդէ Ասողիկ, «ԶՈրմզդական հուրն վառեաց ի Ուշտունիս եւ սախպէր գքրիստոնեայս կրակի երկրպագանել, յաղագս որոյ բազումք մեռան» (Պատմ., էջ 84), սակայն լռած է նախարարին (Ուշտունի) անունը, որուն ատեն այդ կատարուած է:

Ուշտունիներն այնպէս կը թուի՝ թէ անկումի շրջան մը բոլորելէ յետոյ՝ յանկարծական բարձրացում մը կ'ունենան ԹԷՈԴՈՐՈՍի ու ՎԱՐԴ ՊԱՏՐԻԿի ցայտուն դէմքերով ու անկէ վերջ անոնց արեւը ոչ թէ մար կը մտնէ, այլ կը խաւարի:

Թէոդորոսի տոհմանունը Ասողիկի մօտ անգամ մը Սահառունի[17] կը նշանակուի. «Զկնի Դաւթի Սահառունւոյ եկաց իշխան Հայոց Թէոդորոս Ուշտունի ամս ԻԵ (Պատմ., էջ 88) եւ ապա՝ «Զօրավարն Հայոց Թէոդորոս Սահառունի Պատրիկ, որ էր Ուշտունեաց տէր» (անդ, էջ 91, ուր կը նշանակուի՝ թէ ձեռագրի մը մէջ կայ՝ Ապուհի): Կը խորհիմ թէ Սահառունի այս անուանումը նախորդ տողերու ազդեցութեան տակ գրուած ըլլայ, սակայն պէտք է եւ անոր ուշադիր ըլլալ որ՝ թէ՛ Սեբէոսի եւ թէ՛ Ասողիկի մօտ՝ Թէոդորոս յիշուած է միշտ՝ իբրեւ Ուշտունեաց տէր կամ Թէոդորոս զօրավար:

---

17 Ոսկեփորիկի մը մէջ կայ «Իշխանն Արծրունեաց Թէոդորոս Ռշտունի» (Հմմտ. Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, Էջմիածին 1921, էջ 25): Իսկ ուրիշ Ոսկեփորիկի մէջ կայ անոր պատմութիւնը (Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուցակ, Բ., էջ 678):

Թէոդորոսի ծննդեան պարագաները (ե՞րբ եւ ո՞ւր ծնած է ու որո՞նք եղած են ծնողները) անծանօթ կը մնան, սակայն հաւաստի է՝ թէ նա «աստուածասէր, բարեպաշտ ու մեծ իշխան» է (Սեբէոս, էջ 167, 195, Ասողիկ, էջ 90—91, Յովհ. Կաթ., էջ 81) եւ քաղաքական, եկեղեցական ու շինարարական գործունէութեամբ երեւելի հանդիսացած:

Թէոդորոս կ՚ապրի ու կը հրահանգուի Պարսիկներու Խոսրով թագաւորի արքունիքին մէջ ու իրեն սննդակից կ՚ունենայ Ասպետ, որուն հետ բարեկամական անձուկ սիրով ու համակրութեամբ կը կապուի (Սեբէոս, Պատմութիւն ի Հերակլն, Թիֆլիս 1913, էջ 186):

Մինչ Մժէժ Գնունեան — Դաւիթ Սահառունեան ու անոնց կուսակիցներու եւ ազատներու երկպառակութեան ու անմիաբանութեան, բայց մանաւանդ Արաբներու (Հագարացիներու) ասպատակութիւններու հետեւանքով «Երկիրս Հայոց» տառապանքներու կը մատնուի՝ «Միայն աստուածասէր իշխանն Ռշտունեաց գաւառին՝ Թէոդորոս կազմէր զզօրս իւրոյ կողմանն հանապազ եւ զգուշանայր զտիւ եւ զգիշեր ըստ իւրոյ քաջ իմաստութեան՝ ոչ սակաւ ոճիրս գործէր ի թշնամեաց» (Սեբ., էջ 167):

Արաբացիներու առաջին արշաւանքը Հայաստանի վրայ տեղի կ՚ունենայ Հ. Ջամ-

չեանի համաձայն՝ 636ին (Պատմ. Հյց. Բ., էջ 342), իսկ Հ. Համբարեանի համեմատ՝ 637—638ին, երբ կը հանդիպի Մարդուցէսի կոտորածը (Յուշարձան, Գրական ժողովածոյ, Վիեննա 1911, Հայք Արաբացւոց իշխանութեան տակ, ժամանակագրական խնդիրներ Սեբէոսէն, էջ 344)։ Մինչդեռ Մանանդեան վերոյիշեալներու եւ ուրիշ բանաւէրներու եւ գրողներու վարկածներն ու կարծիքները շարելէ վերջը՝ նկատի առնելով հայ ու օտար պատմագիրներու հաղորդագրութիւնները եւ պատճառաբանելով՝ որ «Արաբացիները չէին կարող Հայաստան մտնել՝ Միջագետքը եւ նրա գլխաւոր քաղաքները գրաւելուց առաջ», 640 տարին կը նշանակէ անոնց մուտքը Հայաստանի մէջ (Մանր Հետազօտութիւններ... 3. Արաբական արշաւանքներ Հայաստանում. Երեւան 1932, էջ 23—28)։ Իսկ Մարդուցէսի կամ Մարդուցայքի[18] կոտորածը շատ աւելի ուշ կը դնէ (հմմտ. վարը)։ Անոր համաձայն 640ին — առաջին արշաւանքի ատեն — կը գրաւուի Դուին քաղաքը։ Սեբէոս կը գրէ՝ «Եւ ել զաւր ապականիչ յԱսորեստան կողմանէ ընդ ճանապարհս Ձորոյ յաշխարհն Տարօնոյ ...եւ ընդ Գոգովիտ Թափեցան յԱյրարատ ...եւ եղեւ յաւուրն հինգերորդի գիշե—

---

[18] Մարդուցայքի, ինչպէս եւ Եղբարք սարակի (Եղջերք) մասին հմմտ. վարը եւ Մանանդեան Յ., Հին Հայաստանի գլխաւոր ճամբաները, Երեւան 1936, էջ 157—161. եւ նոյնը՝ Մանր Հետազօտութիւններ, Երեւան 1932, էջ 40—47)։

ցին ի վերայ քաղաքին (Դունոյ) ...մատնեցաւ քաղաքն ի ձեռն նոցա. քանզի արկին մուխ շուրջանակի, մերժեցին ծխովն եւ նետաձգութեամբն զպահապանսն պարսպին եւ կանգնեալ սանդուխս ելին ի պարիսպն եւ անկեալ ի ներքս՝ բացին զդուռն քաղաքին: Եւ դիմեալ ի ներքս զօրք թշնամեացն սատակեցին սրով զբազմութիւն քաղաքին, եւ առեալ զաւար եւ զկապուտ քաղաքին՝ ելին եւ բանակեցան ի նմին բանակատեղն, որ օր քան էր Տրէ ամսոյն յաւուր Ուրբաթի ...Եւ խաղացուցին զբազմութիւն գերւոյ ԼԵ. հազար ոգի» (էջ 175—176):

Իսկ Ղեւոնդ կը գրէ՝ «Յերկրորդ ամի Կոստանդնու կայսեր Հոռոմոց, ազգ եղեւ առ իշխանն Թէոդորոս՝ եթէ հէն զարթուցեալ գայ ի վերայ աշխարհիս: Իսկ նորա առեալ զզօրս իւր կամէր ունել զկիրճս ճանապարհին Ձորայոյ, այլ ոչ կարաց ժամանել յառաջս նոցա, քանզի ըստ օդաթեւն արագութեան յարձակեալք իբրեւ օձք թեւաւորք յառաջեցին թշնամիքն եւ զկնի իւրեանց թողեալ զզօրսն Հայոց դէմ երթեալ ընթացան ի մայրաքաղաքն Դուին: Եւ վասն զի թափուր գտին զքաղաքն յարանց պատերազմողաց, զի ամենեքեան զհետ Թէոդորոսի իշխանին գնացեալ էին, բայց միայն զկանայս եւ զմանկտիս եւ զայլ խառնիճաղանճս. որք ոչ էին արք պատերազմի՝ հասին ի վերայ քաղաքին եւ վաղվաղակի առին զամրոցն եւ զառեալ արսն ի նմա կոտորեցին եւ զկանայս

եւ զմանկունս փարեցին ի գերութիւն՝ ողջս ԼԵՌ» (էջ 9, հմմտ. Վարդան, Պատ., էջ 67):

Սեբէոսի համաձայն Թէոդորոս, որ նախապէս «գնացեալ էր ի քաղաքն Նախջաւան (էջ 175), եւ ապա՝ «Դարանակալ եղեալ ի Կոգովիտ գաւառի դիմէ ի վերայ նոցա սակաւուք» (անդ, էջ 176), սակայն դժբախտաբար անկարող կ'ըլլայ ցանկալի արդիւնք ձեռք բերելու: Ուստի եւ խոհեմական կը գտնէ նահանջն ու կեանքի խնայումը, ինչպէս եւ զէնքի ընդվայր սպառումը: Մինչդեռ թշնամին կատղած՝ զինքն ու իր հետեւորդները կը հետապնդէ ու անոնցմէ շատերը «սատակէին» (Սեբ., էջ 176, ուր կ'աւելցուի «Եւ եղեւ այս յամս Եզրի կաթողիկոսի, հմմտ. Ասողիկ, էջ 98, 120 եւ 142):

Թէոդորոսի հաւատարմութեան ու քաջութեան այս ցոյցը — թէեւ ոչ բոլորովին յաջող — շատ լաւ ազդեցութիւն կ'ընէ բիւզանդական պետական շրջանակին մէջ, որ անոր ընտիր գործունէութեան արդէն տեղեակ էր, թէպէտ պակաս չէին անոր անունը մրոտողներ: Սակայն ատոնք անոր համբաւին չէին կրնար կարեւոր վնաս հասցնել եւ երբ Ներսէս Կաթողիկոսին շատ նպաստաւոր միջնորդութիւնն ալ կու գայ կ'աւելնայ՝ Թէոդորոս Ռշտունին կը բարձրանայ «զօրավարութեան՝ հանդերձ պատրկութեան պատուով», որոնց արժանի էր լիապէս (Սեբ., էջ 176. Յովհ. Պատ., էջ 87): Քաղաքական

պարագաները Բիւզանդիոն կը ստիպէին Թէոդորոսի արժէք տալ։

Դուինի առումի թուականին մասին Հ. Համբարեան կը գրէ «Արաբական երկրորդ արշաւանքը — ըստ Մանանդեանի՝ առաջին հմմտ. վերը —, յորում Դուին քաղաքն առնուեցաւ, կը պատմէ Սեբէոս եւ ասկէ առնելով նաեւ Ղեւոնդ։ Դունայ առումը պատահած է ըստ Սեբէոսի Տրէ ամսոյն 20ին Ուրբաթ օր մը։ Dulaurier, Recherches sur la Chronologie arménienne, I, 1, էջ 231, Ղազարեան, Armenien unter der arabischen Herrschaft, Marburg 1903, էջ 29, Թոփչեան, Zeitschrift für armenische Philologie 1904, II, էջ 64. եւ այլք 641 կամ 642 կը դնեն Դունայ առումը, որ հակառակ կ'ելլէ Սեբէոսի ժամանակագրութեան, վասն զի յիշեալ երկու տարիներուն Տրէ 20ը՝ ստոյգ է որ Հոկտեմբեր 6ին կ'իյնայ, բայց օրերն՝ մին Շաբաթ եւ միւսը Կիրակի կ'իյնան։ Մինչ 640ին Տրէ ամսոյն 20ը կը համապատասխանէ Հոկտեմբեր 6 Ուրբաթ օրուան (Հ. Զամչեան եւս՝ 640 կը դնէ սոյն դէպքերու թուականը, մինչ Դիոնեսիոս Պատմագիրը՝ 641ին. հմմտ. Պատմ. Հյց., Բ., էջ 343)։ Այսպէսով կը ճշդուի Եզրի մահուան եւ Ներսէս Շինողի Կաթողիկոսութեան գահը բարձրանալուն թուականը (640) եւ վերջինոյս միջնորդութեամբ Թէոդորոս Ռշտունւոյն պատրկութեան պատիւ ստանալուն տարին 641» (Յուշարձան, էջ 244)։ Հ.

Ճամբարեանի եւ ուրիշներու այս ու համա-
նման հարցերու ճշգումներն ու կարծիքները
սրբագրել կամ հաստատել կը ջանայ Մանան-
դեան նկատի ունենալով հայ ու արաբ մա-
տենագիրները (հմմտ. Բ. Խալաթեանց Արա-
բացի մատենագիրք Հայաստանի մասին,
Վիեննա 1919, էջ 36—53 եւ 39) եւ կը տեսնէ՝
որ Դւնոյ առումի թուականներ կ'ըլլան՝ 640,
640—641, 642—643, 644—645, 645—646,
656—657: Սակայն առնցմէ ամէնէն հա-
ւաստին է՝ 640 թուականը: «Հիմնուելով տօ-
մարական պարզ եւ հասկնալի այս հաշվի
վրայ կարելի է ապահովապէս եզրակացնել
որ Դվինի առումը տեղի է ունեցել ոչ՝ թէ
641, 642 կամ 643 թուականներին, այլ
640 թվի Հոկտ. 6ին, Ուրբաթ» (Մանր Հե-
տազօտութիւններ, էջ 28 եւն, հմմտ. եւ
վերը):

Մանանդեան Դուինի առումը արաբական
առաջին արշաւանքի տեղն դնելէ վերջ՝
Մարդուցայքի կոտորածը կը զետեղէ երկ-
րորդ արշաւանքի միջոցին: Եւ այդ երկրորդ
արշաւանքը տեղի կ'ունենայ 642—643ին (Հ.
Ճամբարեան՝ այդ երրորդ արշաւանք կը
նշանակէ. հմմտ. Յուշարձան, էջ 245): Մա-
նանդեան կը կռթնի Դիոնեսիոս Տելմարցիի
վկայութեան վրայ, որ կը գրէ՝ «955 (643—
644) Պատրիկ Վաղենդին՝ Հռոմայեցւոց զօ-
րավարը՝ եկաւ կռուելու արաբների դէմ:
Ահաբեկուած նրանց ներկայութիւնից նա
փախաւ եւ թողեց իր հետ եղած բոլոր

հարստութիւնները՝ որ ինկան Արաբների ձեռքը: Նոյն թուին Պռոկոպ եւ Թէոդորոս մի խիստ ուժեղ յարձակում գործեցին եւ հասան մինչեւ Բատնասատուղ: Թէոդորոսի եւ Պռոկոպի այս գործակցութիւնը յետոյ չենք տեսներ: Նմանապէս Ղեւոնդ կը վկայէ՝ թէ Մարդուցայքի կոտորածը տեղի կ'ունենայ Ամրի եւ Աթմանի (Օթմանի) 22րդ տարին, այս է՝ 642—643ին» (Մանանդեան, Մանր Հետազօտութիւններ... էջ 40—47):

Մարդուցայքի կոտորածի պատմութիւնը Ղեւոնդ այսպէս կու տայ՝ «Եւ մեծ մասն զօրուն (Հագարացւոց) հատեալ տապաստակէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից եւ առնուին ի գերութիւն զաւանս Մարաց եւ զգաւառն Գողթն եւ զդաստակերտն Նախջաւանու. եւ զբազումս յարանց ընդ սուր անցուցանէին եւ զայլս գերի վարեալ կանամբք եւ մանկտաւ անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայոյ: Եւ ընդ երկուս բաժանեալ զօրքն՝ ոմանք զգերեալսն դարձուցանէին յաշխարհն իւրեանց: Եւ գունդ մի հատեալ տապաստակէին ընդ գաւառն Արտազ ի վերայ զօրավարին Յունաց, որում անուն էր Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Կոգովտի ի սահմանս Բագուանոյ եւ Մարդուցայից. որում իրազեկ եղեալ իշխանն Թէոդորոս, որ էր յազգէն Ռշտունեաց, ազդէր զօրավարին Պռոկոպայ՝ եթէ զօր հինին Իսմայելի զարթուցեալ գայ ի վերայ մեր:

Իսկ նա ի բազմութիւն զօրացն ապաստանեալ եւ ոչ յԱստուած, որ յաջողէ զպատերազմ, ոչինչ գրէր զբանս իշխանին Հայոց: Եւ նա մորմոքեալ ընդ կորուստ աշխարհիս Հայոց եւ ընդ ծուլութիւն զօրավարին, ոչ ունէր ժոյժ, այլ մտեալ՝ երկրորդէր եւ երրորդէր զբանն: Եւ բարկացեալ զօրավարին ի վերայ իշխանին՝ ձգէր զվարդն որ ի ձեռին զհետ նորա: Եւ սրտմտեալ Թէոդորոս ելանէր յերեսաց նորա եւ նոյնժամայն հրամայէր զօրացն, որ ընդ իւրով իշխանութեամբն էին. Վառեցարուք, ասէ, եւ ելէք ընդդէմ Իսմայելի: Եւ նոքա հեծեալ յերիվարս իւրեանց՝ դարանամամուտ եղեն ի սարակն, որում Եղբարսն կոչէին, եւ կալեալ զառաջս կրճիցն զբազումս ի նոցանէ սատակէին եւ առեալ զկապուտ անկելոցն հատուածեալ ի զօրավարէն գնացին ի գաւառն Գառնի: Հրաման ետ ապա Պուկոյն իւրում զօրուն ելանել ի վերայ Թշնամեացն, յորոց վերայ հեղեալ զօրն Իսմայելի՝ հարկանէին զմեծ մասն Յունաց եւ զայլսն փախստական արարեալ անցուցանէին ընդ բանակն իւրեանց. եւ ինքեանք դարձեալ ի բանակն նոցա հանգչէին: Եւ ասեն լինել զթիւ զօրացն Յունաց աւելի քան զվեց բիւր արանց եւ զԻսմայելացւոցն նուազ քան զբիւր մի արանց: Եւ ի վաղիւն ժողովեալ զկապուտ բանակին, դարձեալ ընդ կրունկն գնացին յաշխարհն իւրեանց» (Պատմութիւն Ղեւոնդեայ Մեծի

վարդապետի Հայոց, Ս. Պետերբուրգ 1887, էջ 7—9)։

Մարդուցայքի կամ Մարդուցէսի կուսի մասին Սեբէոսի մօտ լոկ ակնարկութիւն կայ՝ «Ամբաստանութիւն ամենայն զաւրացն Հոռոմին եւ տրտունջ զՌշտունեաց տեառնէն լինէին եւ զՀայոց՝ առաջի Թագաւորին իւրեանց վասն հարուածոց, որ եղեն ի Մարդուցէսն, զի ասացին՝ Միաբանեցան ընդ Իսմայելացիսն[19]» (Սեբ., էջ 22)։

Վերը յիշեցինք թէ Թէոդորոս Ռշտունին զօրավար ու պատրիկ անուանեցաւ (Սեբ., էջ 176)։

Գրեթէ միեւնոյն ժամանակ Յոյները «Արաբին զաւրավար զԹէոդորոս[20] զոմն հաւատարիմ յիշխանացն Հայաստանեայց,

---

[19] Սեբէոս հարկաւ անկաւոր տեղ մը այս պատերազմի մասին արտայայտուած պիտի ըլլայ (հմմտ. Ակինեան Հ. Ն.՝ Մատենագրական Հետազօտութիւններ, հտր. Գ., Վիեննա 1930, էջ 74)։ — Ամբաստանութիւնը կը շարունակուի՝ «... Զմեզ վստահացուցին եւ զզաւրսն ճապաղել ետուն յասպատակ յԱտրպատական եւ զնոսա ածին ի վերայ մեր յանկարծակի եւ հարկանել ետուն զմեզ եւ մեր ամենայն ինչ անդ անկաւ. բայց Թող երթամք ի Հայս եւ մեր իրացն խնդիր առնեմք։ Յայնժամ արքայ Կոստանդին հաւանեցաւ առնել զկամս զաւրացն։ Եւ առ զզաւրս իւր եւ գնաց ի Հայս Ճ. հազարաւ» (Սեբ., էջ 225. հմմտ. վարը)։

[20] Այս շրջանին պայծառ է՝ որ երեք Թէոդորոս կայ՝ Թէոդորոս Ռշտունի, Թէոդորոս Վահեւունի եւ Թէոդորոս իշխան կամ զօրավար Յունաց (հմմտ. Մանանդեան Յ., Մանր հետազօտութիւններ..., Արաբական արշաւանքները Հայաստանում..., Երեւան 1932, էջ 58—61 ուր եւ Հ. Համբարեանի եւ ուրիշներու կարծիքները)։

յայնց որ ի Յունաց կողմանէ» (Սեբէոս, էջ 184)։

Յունական կողմի այս Թէոդորոս՝ հազիւ իշխանութեան ու փառքի հասած՝ բարեգործութեամբ կը սկսի իր պաշտօնավարութիւնը։ Նա կը յիշէ Ասպետ Բագրատունին, որ Ափրիկէ աքսորուած էր։ Բիւզանդիոնի ինքնակալէն անոր ազատութիւնը կը հայցէ եւ վերջինս զանիկա Պոլիս ետ կանչելով՝ կը պատուէ ու կը մեծարէ։ Մինչ այս՝ Պոլիս կը ժամանէ — սակայն չղթայակապ — Թէոդորոս Ռշտունին[21], զի անոր հանդէպ գէշ վերաբերմունք կ՚ունենայ Թովմաս իշխանը, որ ի Հայս առաքուած էր (անդ, էջ 185)։ «Թովմաս եկն յերկիրն Կոտէից, յանկարծակի յարձակեցան (զօրքերը) ի վերայ նորա (Թէոդորոսի), կալան զնա եւ կապեցին եւ եառուն տանել յանդիման թագաւորին»։ Կայսրը եղածը տեսնելով՝ կը խռովի եւ չուտով կը հրամայէ Թէոդորոսի կապերը անյապաղ լուծել եւ ապա «ընթեռնուլ զգիրս ամբաստանութեան»։ Անոր անմեղութիւնն ու անպարտութիւնը երեւան կու գան եւ թագաւորէն ընդունելութեան կ՚արժանանայ։ Վերստին իր պաշտօնին մէջ կը հաստատուի։ Մինչդեռ Թովմաս իր արժանաւոր պատիժը կը ստանայ։ Կ. Պոլսոյ մէջ Ասպետ ու Թէո–

[21] Մանանդեան Թէոդորոս Ռշտունիի կալանաւորումը եւ Պոլիս ժամանումը կը դնէ՝ 646 թուականին, իսկ Հայաստան վերադարձը՝ 649ին (Մանր Հետազօտութիւններ, էջ 56)։

դորոս տարիներէ յետոյ կը տեսնուին «եւ հեղուին արտասուս ի վերայ պարանոցի իւրեանց, զի էին սննդակիցք միմեանց ի դրանն Խոսրովայ արքային Պարսից» (Սեբ., էջ 185—186): Ասպետ՝ յունական քաղաքականութենէն ու իրեն հանդէպ կանխաւ եղած կամ ցուցուած վերաբերմունքէն դժգոհ՝ անհաճոյ քայլեր կ'առնու եւ Թէոդորոս զօրավարը դժուարին կացութեան կը մատնէ, սակայն Ներսէս Կաթողիկոսին միջնորդութեամբը բաղձալի լուծում կը գտնուի (անդ, էջ 187:

Թէոդորոս Ռշտունին կայսեր կողմէ Հայաստան կ'արձակուի «մեծաւ պատուով եւ ետ նմա զայն իշխանութիւն զաւրավարութեան, եթէ կամիցին իշխանքն Հայոց եւ եթէ ոչ կամիցին, եւ եկն կարգեցաւ ի նոյն իշխանութիւն» (Սեբ., էջ 188): Ծանօթ է որ այդ շրջաններուն Բագրատունիներն ու Մամիկոնեաններն էին, որ հայ ազգին վերին իշխանութիւնը կը ձգտէին իրենց ձեռքին մէջ ունենալ, իսկ կայսրը իր բարեացակամութեան ցոյցերը կը կրկնապատկէր Թէոդորոսին՝ մոռցնել տալու համար՝ անոր հանդէպ եղած անարդարանքին ծանրութիւնն ու նմանապէս անվստահութիւնն: Նա անոր ուժեղ բազուկին ու տարիներու փորձառութեանը կը կարօտէր արաբական յառաջխաղացութիւնները կասեցնելու համար:

Եւ ահա Արծափի պատերազմը Թէոդո-

րսախ վարսերուն վրայ դիւցազնի յաղթութեան պսակը կը հանդչեցնէ:

Սեբէոս կը պատմէ՝ «(Իսմայէլացիք) գնացին անտի եւ բանակեցան յԱրծափս հանդէպ բերդին առ ջրովն: Եւ սկսան պատերազմիլ ընդ բերդին...: Եւ եղեւ յաւուր երկրորդի Կոստանդնի, յամսեանն Հոռի, որ օր ԻԳ էր ամսոյն, յաւուր Կիւրակէի ընդ առաւօտս, ճչեցին Իսմայելացիք ի բերդին վերջոյ եւ առաջոյ, եւ հարին զնոսա սրով սուսերի: Եւ զկանայս եւ զմանկունս իջուցին ի բերդէն, կամէին սատակել եւ ոչ գոյր թիւ գերւոյն եւ անասուն պաճարացն բազում յոյժ: Եւ եղեւ ի վաղիւ առաւաւտուն եկն եհաս ի վերայ նոցա զաւրավարն Հայոց (Թէոդորոս) եւ եհար զնոսա անհուն կոտորածով: Եւ էին նոքա՝ իբրեւ երեք հազար ընտիր սպարազէնս յամենայն զաւրացն Իսմայէլի եւ ոչ ոք զերծաւ ի նոցանէ, բայց սակաւք ճողոպրեալք՝ հետեւակք երթեալ ամրացան ի Ծամբին: Եւ ապրեցոյց Տէր յաւուր յայնմիկ զբազմութիւն գերւոյն ի ձեռաց Իսմայէլացւոցն եւ զԻսմայէլ խորտակեաց կործանմամբ մեծաւ. եւ մեռան Բ. իշխանքն Իսմայէլի՝ Աւթման եւ Ոգման: Եւ եղեւ յաղթութիւն մեծ զաւրավարին Հայոց, եւ ետ տանել զաւրավարն Հայոց զընծայս Կոստանդնի ի պատերազմէն՝ զընտիր երիվարացն Ճ. ձի, զոր առեալ արքայի ուրախ եղեւ ինքն եւ ամենայն պաղատն եւ

*արձակեաց անդրէն շնորհակալութիւն մեծ»* (էջ 189—191) [22]։

*Լսենք եւ Ղեւոնդ Երէցը․ «Ապա յետ այնորիկ յերեսուն եւ վեց ամի իշխանութեան նոցա (Աբուբեքրի, Օթմանի եւ Ամրի) զօր ժողովեալ՝ դարձեալ յարձակեցան ի վերայ աշխարհիս Հայոց, որոց էին գլխաւորք Օթման եւ Օգբայ։ Եւ իբրեւ հասին ի սահմանս Հայոց՝ յերիս բաժանեալ առաջս՝ սփռեցան յասպատակս իւրեանց։ Առաջ մի հատեալ ընդ կողմն Վասպուրական աշխարհին առին գաւառս եւ զամրոցս, որ մինչեւ ի Նախջաւան քաղաք․ եւ առաջ մի ընդ կողմն Տարօնոյ։ Եւ միւս առաջն հասեալ ի Կոգովիտ՝ պաշարէին զամրոցն Արծափաց։ Եւ գտեալ*

---

[22] *Թէոդորոսի գործունէութեան եւ Արծափ(ք)ի կռուի մասին Շապուհ Բագրատունին կը գրէ՝ «Աշխարհին Հայոց տիրեաց Թէոդորոս Ռշտունի ի տանէն Մանաճեղի եւ կալաւ զաշխարհն Հայոց ամս ԽԵ։ Եւ ուղարկեաց զՎարդ որդին իւր յերկիրն Հոռոմոց եւ էբարձ զհարկատրութիւն Հոռոմոց զոր տային Հայքն, եւ տուն Տաճկաց, քանզի զաւրացաւ տունն Պարսից եւ յաղթահարեաց զտունն Բաղտատոյ եւ Հուրմիզտպաքար թագաւորեաց ի տունն Պարսից եւ կազմեաց զաւրք եւ յեղեաւ ի վերայ երկրին Վասպուրականի եւ բազում աւերումն ած յերկրին Ճվաշու եւ զԳեղամ եւ զԱրտաշ եւ Հացիւն եւ զԿոգովիտ այրեաց առհասարակ եւ էառ զամուրն Արծափաց։ Եւ բազում կանայք որ անդ կային գերեաց։ Եւ ապա Թէոդ(որ)ոս զհետ մտեալ էհաս նոցա եզր գետոյն Երասխայ, զբազումս ի նոցանէ էսպան եւ զայլսն փախստական արարեալ եւ թափեաց զաւարն, զոր առեալ էին եւ բազմութիւն գերեացն դարձոյց» (Պատմ., էջ 29—30)։ — Միեւնոյն պատերազմին նկարագրութիւնը հայ քանի մը մատենագիրէ դիտումով յառաջ կը բերենք, որպէս զի անոնց նմանութիւններն ու տարբերութիւնները աչքի զարնեն։*

*զմուտ բերդին՝ ի գիշերի դաղտագողի ելին ի նա, զի ի քուն գտին զպահապանսն եւ առին զամրոցն եւ զգտեալ արսն որ ի նմա արկին ընդ կապանօք...: Յորս գթացեալ ամենատեսն Աստուած..., առաքէր ի վրէժխնդրութիւն չարեացն, զոր գործեցին, զիշխանն Թէոդորոս, որոյ երագաթեւ յարձակմամբ իբրեւ զխոյանալ արծուոյ հասեալ ի վերայ հինին եկելոյ եւ ընդ նմա արք Ռ. վառեալք զինու. վաղվաղակի հասեալք սատակէին զթշնամիս իբրեւ արս ԳՌ. եւ զկապեալսն արձակէին եւ զսակաւ մնացորդսն թշնամեաց փախստական արարեալ դարձուցանէին զգերեալսն եւ զաւար եւ զկապուտ թշնամեացն ժողովեալ՝ դարձան խնդութեամբ...: Եւ զայս չարիս կատարեալ իշխանացն Իսմայէլի Աբու-Բաքրայ, Օթմանայ եւ Ամրի յաւուրս իւրեանց փախճանեցան» (էջ* 11—12, *հմմտ. եւ Ասողիկ, էջ* 122):

*Արդ կու գայ կարեւոր հարցը: Ե՞րբ տեղի ունեցած է Արծափի այս նշանաւոր դրուագը:*

*Հ. Համբարեան կը գրէ «Արաբական երրորդ արշաւանքը տեղի ունեցաւ ըստ Սեբէոսի Կոստանդնի երկրորդ տարին: Այս արշաւանքի միջոցին գրաւուեցաւ Արծափս բերդը Հոռի ամսոյն* 23*ին, Կիրակի օր մը: Կոստանդին թագաւորած է* 641 *թուականին աշնան միջոցին, ուստի Սեբէոս* 642 *թիւը տակաւին նոյն թագաւորին առաջին տարին*

կը հաշուէ, որով 643ը կայսեր երկրորդ տարին կ՚իյնայ եւ Հոռի 23ը իրօք կը համապատասխանէ Օգոստոս 10 Կիրակի օրուան։ Այս նկատմամբ ճիշդ է Dulaurierի հաշիւը, որուն հետեւած են այլք» (Յուշարձան, էջ 245)։ Մինչ նա եւ շատերը հետեւելով Dulaurierի[23] 643ին կը նշանակեն Արծափի կռիւը, Մանանդեան կը գրէ «Dulaurierի մատնանշած տօմարական զուգադիպութիւնները պատահական են եւ չեն կարող հիմք ընդունվել ժամանակագրական այս խնդրի լուծման» (Մանր հետազօտութիւններ..., էջ 50)։ Նա նկատի ունենալով Արծափի գրաւումի դէպքէն յառաջ Սեբէոսի մօտ յիշուած յաջորդական կարգով պատմական նախընթաց անցքերը «որ տեղի ունեցել են Կոստաս-Կոստանդինի կայսրութեան երկրորդ, հինգերրորդ եւ յետագայ մի քանի տարիներում, օրինակ՝ պատրիկ Վաղենդինի դաւադրութիւնը 643ին, Վարազտիրոցի աքսորից վերադառնալը 645/46, Թէոդորոս

---

[23] Recherches sur la Chronologie Arménienne... tome I. Paris MDCCCLIX էջ 231—232, հմմտ. վերր.— Chazarian, Armenien unter der arabischen Herrschaft..., 1903, էջ 29. — Tournebize Fr., Histoire politique et religieuse de l'Arménie. Paris 1910, էջ 126. — Marquart J, Streifzüge (Osteuropäische und ostasiatische...) Leipzig, 1903, էջ 440. — De Morgan J., Histoire du peuple arménien, depuis les temps les plus reculés de ses annales juspu'à nos jours. Paris, 1919, էջ 116. — Grousset R., Histoire de l'Arménie des origines â 1071, Paris, էջ 299 եւն եւն։ — Լէօ Արծափի պատերազմը կը դնէ 651ին (Պատմ. Հյց., Բ., էջ 317)։

Ռշտունու դատը Կ. Պոլսում եւ արդարացումը, Վարազտիրոցի փախուստը... Թէոդորոս Ռշտունու արձակումը Հայաստան եւ նրա վերահաստատութիւնը զորավարութեան նախկին իր պաշտօնում եւ այս անցքերից յետոյ միայն յիշւում է արաբական մեծ արշաւանքն Ատրպատականի կողմից եւ առումը» (Մանր հետազօտութիւններ..., էջ 51)։ Դարձեալ նկատի առնելով Սեբէոսի արտայայտութիւնները՝ թէ Արծափի գրաւումը Դամասկոսի մէջ կնքուած եռամեայ զինադադարի դաշինքէն յառաջ է եւ Ղեւոնդի վկայութիւնը՝ թէ այն բերդի առումը տեղի կ'ունենայ Դուինի գրաւումէն տասը տարի վերջը։ Նաեւ Սեբէոսի «Յամին երկրորդի» (Բ.) սրբագրելով՝ «Յամին Ութերրորդի» (Ը.) կամ «Յամին Իններորդի» (Թ.). (որ է ըսել տառերու նմանութեամբ՝ շփոթութիւն կամ աղաւաղում)։ Նմանապէս տօմարական հաշիւով (թէեւ այդ կրնայ եւ պատահական ըլլալ) գտնելով՝ որ Հոռի 23ը կը համապատասխանէ 650 Օգոստոս 8ին Կիրակի օր մը, Մանանդեան կու գայ այն եզրակացութեան — որ դիւրաւ կարելի չէ մերժել — թէ Արծափի նուաճումը տեղի ունեցած է՝ 650ին (անդ, էջ 47—57, հմմտ. եւ [ԱրմՖանի] Գիտական Ժողովածու ՍՍՌՄ Գիտութեան Ակադեմիա, Երեւան 1941, էջ 70—71)։

Այսպէս Մանանդեանի ուսումնասիրութիւններու եւ հետազօտութիւններու համաձայն արաբական արշաւանքները դէպի Հա-

յաստան տեղի կ՚ունենան հետեւեալ տարինե-րուն՝

Ա. Արշաւանք՝ 640ին,
Բ. Արշաւանք՝ 642/43ին,
Գ. Արշաւանք՝ 650ին,

(Հմմտ. Մանր հետազօտութիւններ..., էջ 57:)

Մինչ նոյն արշաւանքները կը դրուէին ընդհանրապէս այսպէս՝

Ա. Արշաւանք՝ 636/7ին կամ 637/8ին,
Բ. Արշաւանք՝ 640ին,
Գ. Արշաւանք՝ 642/3ին,

(Հմմտ. Յուշարձան..., էջ 244—245:)

Իսկ Laurent կ՚ընդունի վեց արշաւանք. L'Arménie entre Byzance et Islam, էջ 90, 200 եւ 371:

Արաբական այս արշաւանքները — մին միւսին ժամանակի կարճ անջրպետով յաջորդած — բնական է որ ամէն Հայու — մանաւանդ Թէոդորոս Ռշտունիին — Հայաստանի ապագային մասին լրջօրէն մտածել տային:

Թէոդորոս քաղաքագէտ է ու տարինե-րով փորձառութիւն ունի: Կը նկատէ՝ թէ ինչպէս կարճ ժամանակի մէջ արաբական պետութիւնը կը տարածուի եւ անոր երիտասարդի ուժին ու կորովին առջեւ — միացած անգթութեան հետ, որուն լուրը արդէն սարսափ կ՚ազդէ — երկիրներ կը խոնարհին ետեւէ ետեւ: Նոյն իսկ պարսկական ու բիւ-

զանդական պետութիւնները, արդէն յոգնածի վիճակի դատապարտուած, չէին կարող անոր ահեղ հոսանքներուն ու յորձանքներուն դէմ թումբ ու պատուար կանգնել: Մանաւանդ որ պարսկականը կը կործանի անփառունակ: Պարսկականը, որ արդէն բիւզանդականին հետ ցանցառ անգամ հաշտ եղած է ու անոր փոխան այժմ բիւզանդականին դէմ ոգին ի բուին կ՚ոգորի նորածնունդ եւ ուժեղ հագարականը, որ ակներեւ կը տեսնուի թէ ապագայ ունի:

Թէոդորոս նմանապէս կը տեսնէ՝ թէ Յոյներէն Հայուն ու Հայաստանի համար նպաստաւոր բաներ կարելի չէ սպասել — դարերու վկայութիւնը կար — մանաւանդ թէ գուցէ յարմար առիթն է՝ կա՛մ բոլորովին անկախ ըլլալու կա՛մ նորայարոյց պետութեան մը ազատակամ ու բարեկամաբար ենթարկուիլ՝ յոռեգոյն օրերէ ու աղէտներէ խուսափելու համար: Կը բաղձայ իր ազգին ազատութիւնը կամ նուազ ստրկութիւնը:

Դարձեալ նկատի կ՚առնու Բիւզանդիոնի կրօնական հարցերու արծարծումն ու անոնց խորացումը (հմմտ. վարը):

Նաեւ գինուորականի իր սիգութեամբը չի կրնար մոռնալ կալանաւորումի անախորժ դէպքը ու համանման պարագաները: Մանաւանդ Մարդուցայքի յունական բանակին կոտորածին մէջ անոր մասնակցութեան կամ անփոյթ գտնուելու վերապրումը: Եւ պէտք է հոս յաւելուլ՝ դոյզն ազդեցութիւն չունի

նաեւ երկիւղը. «Եւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն եւ ամենայն իշխանքն աշխարհին միաբանեալ հնազանդեցան ի ծառայութիւն եւ ամենայն իրօք փութային զկամս նոցա կատարել, զի երկիւղ անհնարին մահու կայր ի վերայ նոցա» (Սեբ., էջ 242, հմմտ. եւ Յովհ. Պատմ., էջ 87, ուր կ՚ըսուի «Պակուցեալ»):

Ուստի՝ «Եւ ի նմին ամին ապստամբեցին Հայք եւ ի բաց կացին ի թագաւորութենէն Յունաց եւ հնազանդեցան ի ծառայութիւն արքային Իսմայէլի[24], եղին ուխտ ընդ մահու եւ ընդ դժոխոց դաշինս կռեցին Թէոդորոս Ռշտունեաց տէր ամենայն իշխանաւքն Հայոց՝ ի բաց ընկեցեալ զաստուածային

[24] Լէօ կը գրէ՝ «Նշանաւոր է այս համաձայնութիւնը մանաւանդ իբրեւ պետական լայն ըմբռնողութեան մի գործ: Թէոդորոս Ռշտունին մէկն էր այն, տարաբախտաբար, չափազանց սակաւաթիւ հայ քաղաքական գործիչներից, որոնք զգացմունքով չէին ղեկավարվում, նախապաշարմունքների տակ չէին ճնշվում, այլ գործում էին այնպէս, ինչպէս երկրի իրական շահերն էին թելադրում» (Պատմ. Հայոց, Բ., էջ 323): ...Այս ճանապարհն էլ ընտրեց Թէոդորոս Ռշտունին: Ամբողջ Հայաստանն ինքնայօժար երես էր դարձնում բիւզանդական կայսրութիւնից եւ կատարեալ հպատակութիւն էր յայտնում Օսման խալիֆային 653 թուին (Լէօ, անդ, էջ 322): Թէոդորոս որ կոչուած է Արմենիքոս իշխան — որ կանխաւ արաբ Հաբիբ իբն Մեսլեմէ զօրավարին դէմ զօրք հաւաքելու եւ պայքարելու քայլեր առած էր, անոր եւ արաբ ուրիշ բանակներու յաջողութիւններէն ազդուած իր վերջին որոշումը կու տայ՝ հակումը արաբական պետութեան (հմմտ. Խալաթեան Բ., Արաբացի մատենագրերը Հայոց մասին, Վիեննա 1919, էջ 37, ուր եւ տեսնել — մանրամասնօրէն — Հաբիբի ապստամբութիւնները Հայաստանի եւ հարեւան երկիրներու մէջ, էջ 36—48):

դաշնադրութիւնն: Արդ խաւսէր ընդ նոսա իշխանն Իսմայէլի եւ ասէր. Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ քո եւ ընդ ձեզ որչափ ամաց եւ դուք կամիցիք եւ ոչ առնում ի ձէնջ սակ զերամ մի. ապա յայնժամ տացիք երդմամբ, որչափ եւ դուք կամիցիք եւ հեծեալ կալէք յաշխարհիդ ԺԵ. հազար: Եւ հաց յաշխարհէն տուք եւ ես ի սակն արքունի անգարեմ եւ զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ, բայց այլուր ու հրամայեմ, պատրաստ լիցին ի գործ եւ ոչ արձակեմ ի բերդորայն ամիրայս եւ ոչ տաճիկ սպայ ի բազմաց մինչեւ ցմի հեծեալ: Թշնամի մի մտցէ ի Հայս եւ եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր, արձակեմ ձեզ զաւրս յաւգնականութիւն, որչափ եւ դուք կամիցիք: Եւ երդնում ի մեծն Աստուած, եթէ ոչ ստեմ» (Սեբ., էջ 224, հմմտ. էջ 242):

Թէոդորոսի անկախութեան եւ արաբական քաղաքականութեան ձգտումն — ու նաեւ յարումը — կայսր ու ժողովուրդ կը յուզեն. կորու՛ստ է երկրամասի եւ լայն ճամբայի բացո՛ւմ՝ դէպի խորը եւ դէպի մայրաքաղաքը:

Կոստանդին կայսրը[25] բազմամարդ բա–

---

[25] «Թէպէտ եւ բազում աղաչանս եւ պաղատանս գրեաց առ նոսա (Թէոդորոսի եւ անոր համախոհներու) կայսրն եւ կոչեաց զնոսա առ ինքն եւ ոչ կամեցան լսել նմա: Ապա ասէ. Ես գամ ի Կարնոյ քաղաք եւ եկայք դուք առ ես: Եւ կամ՝ ես գամ առ ձեզ եւ տամ ձեզ աւգնութիւն ՀԹ ոգի ու խորհիմք ի միասին եթէ զինչ արժան իցէ առնել: Սակայն եւ այնպէս ոչ կամեցան լսել նմա» (Սեբ., էջ 224—225):

նակի գլուխ անցած՝ կ՚աճապարէ Հայաստան: Դերջանի մէջ «ընդ առաջ եղեն նմա արք Իսմայէլացիք եւ մատուցին նմա թուղթ յիշխանէն իւրեանց, որ էր գրեալ այսպէս՝ թէ Հայք իմ են, անդ մի երթայք, ապա թէ երթաս ես գամ ի վերայ քոյ եւ առնեմ զքեզ որ անդրէն փախչիլ ոչ կարես: Իսկ արքայ Կոստանդին ասէ. Աշխարհն իմ է, դու եթէ գաս ի վերայ իմ, Աստուած արդարութեան դատաւոր է: Եւ անտի գնացեալ եկն ի Կարնոյ քաղաք, յամի ԺԲ. երրորդի թագաւորութեան իւրում եւ ի քսան ամի Իսմայէլացւոց տէրութեան» (Սեբ., էջ 22):

Կարնոյ մէջ հայ իշխաններէն ոմանք եւ Ներսէս Կաթողիկոսը Թէոդորոս Ռշտունիին ընթացքը կը դատապարտեն ու «յայնժամ նզովեաց թագաւորն եւ ամենայն զաւրքն իւր զՌշտունեաց տէրն եւ լուծին զնա ի պատուոյ իշխանութենէն» (Սեբ., էջ 226): Իսկ անիկա Աղթամար կղզին մէջ կ՚ամրանայ ու իր համակիրներուն ու համամիտներուն — որոնց մէջ աչքի կը զարնէ իր փեսան Գրիգոր, որ որդին է Թէոդորոս Վահեւունիին — հրահանգ կու տայ յարմար դատուած տեղ մը ամփոփուիլ եւ հաւաքուած գանձերու ուշադրութիւն դարձնել: Ի հարկէ անոր հրամանները լրիւ կը կատարուին (անդ, էջ 22):

Կոստանդին ժամանակ կորսնցնելու բացարձակապէս անտրամադիր է: Կը ցանկայ ապստամբը խոնարհեցնել ու յաղթապանծ՝ իր մայրաքաղաքը մուտք գործել եւ այդպէս

գոնէ սանձել Հագարացի անզուսպ կորիւնը, որ օրէ օր աներկիւղ կ՚առիւծանար եւ Կ. Պոլսոյ իսկ կը սպառնար։ Սակայն ապա Ներսէս կաթողիկոսի անսալով «Երթեալ ի Դուին նստաւ ի տան Կաթողիկոսին» ու կրօնական հարցերով կը զբաղի — կը խորհի դաւանանքի կապերով Հայերը Բիւզանդիոնի կապել ու հեռացնել Արաբներէն։

Ապա իրեն եղած թախանձանքներու վրայ կայսրը կը զիջանի եւ Պոլիս կը վերադառնայ Հայաստանի վրայ իշխան կարգելով Մաւրիանոս (անդ, էջ 232 եւ Ասողիկ, էջ 89)։

Իսկ «Թէոդորոս Ռշտունեաց տէր դարանակալ եղեւ յԱղթամար կղզին ինքն եւ փեսայ իւր Համազասպ Մամիկոնէից տէր եւ խնդրեաց իւր զաւրս ի յԻսմայէլացւոցն եւ եկն է. հազար այր յաւգնականութիւն նմա եւ նստոյց զնոսա յԱղիովիտ եւ ի Բզնունիս եւ ինքն առ նոսա եկեալ, կայր ի մէջ նոցա» (անդ, էջ 282. հմմտ. ու էջ 227)։ Յունական ուժին դէմ դիմադրելու համար արաբական իշխանութեան կը դիմէ։ Հազիւ թէ սպասումի ու կասումի պարտադրող աննպաստ պարագաները կ՚անցնին՝ յունական ու հելլէնասէր զօրքերու վրայ ուժգնօրէն յարձակում կ՚ընէ (Տայք ու Տրապիզոն կը գրաւուին) եւ անոնք կը ստիպուին փախուստը գերադաս համարել (Սեբ., էջ 233. Լէօ, Պատմ. Հայոց, Բ., էջ 327)։

Այս Թէոդորոս Դամասկոս կը մեկնի ու կը ներկայանայ Իսմայէլի Մաւիաս իշխանին ծանրագին ընծաներով: Համակրութեան ու համամտութեան այս խօսուն ցոյցերուն փոխարէն «Ետ նմա իշխանն Իսմայէլի հանդերձս ոսկեղէնս եւ ոսկեթելս (Թէոդորոսի տեառն Ռշտունեաց) եւ վառ մի նորին արբնակաւ: Եւ իշխանութիւն ետ նմա զՀայս եւ զՎիրս եւ զԱղուանս եւ զՍիւնիս, մինչեւ ցԿապկոհ եւ ցՊահակն ձորայ եւ արձակեաց զնա պատուով» (Սեբ., էջ 233· համմտ. Յովհ. Կաթ., էջ 87—88[26]): Ստուգիւ իշխանութիւն մը՝ այնպիսի սահմաններով, որոնց կարծեմ ինքը ակնկալու չէր եղած, սակայն արաբական ասպատակութիւններու համար անհրաժեշտ էր:

Կոստանդին կայսրը Հայաստանէն շուտով Կ. Պոլիս կը դառնար (համմտ. վերը), որովհետեւ կը նկատէր՝ որ Հագարացիները ծրագրած էին զայն գրաւել: Եւ ստուգիւ

---

[26] Laurent Թէոդորոսի պաշտօններն ու տիտղոսները կ'ամփոփէ՝ Général en chef et patrice, par l'empereur. Sébéos p. 101, 106, Jean (Յովհ. Կաթ.) p. 73; — reconnait Varaztirots Bagratouni comme prince du pays. Sébéos, p. 107; — déstitué Chévond p. 11; — pass aux Arabes; établi par Moaviah chef sur l'Arménie, la Géorgie, l'Albanie, la Siounie et le pays jusqu'à Derbend. Sébéos p 139; — prince des Arméniens Asogikh, p. 63; — Vers 653, Chazarian p. 32 (L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 334): Օրմանեան ունի՝ Թէոդորոս Ռշտունի՝ զօրավար եւ պատրիկ՝ 641—646, զօրավար՝ 646—653. ոստիկան՝ 654—658, ուրեմն զինքը մեռած կը դնէ 658ին (Ազգապատում, Գ., Երուսաղէմ 1927, յաւելուած էջ ճԼԴ—ճԼԷ):

Իսմայէլեան բանակը կը փորձէ զայն նուաճել ու բիւզանդական պետութեան մայթերը խորտակել եւ կործանել։ Սակայն անյաջողութեան կը մատնուի եւ զգալի վնասներով ետ դառնալու կը ստիպուի։ Բարբարոսօրէն պատերազմող զոյգ պետութիւններու համակիր հայ նախարարներէն Համազասպ եւ Մուշեղ Մամիկոնեանները լեզու կը գտնեն ու խոհականութեամբ կը ջանան Հայաստան ու այլուր ասպատակողներն եւ իրենց բանակներու մէջ արիւնհեղութիւնն արգիլել · «Եւ անցուցին խաղաղութեամբ զաւուրս ձմերայնոյն եւ զշինականսն ապրեցուցանէին» (Սեբ․, էջ 237—238)։ Սակայն աղէտներ անպակաս կ՚ըլլան։ Մինչ այս՝ Թէոդորոս Ռշտունի կը հիւանդանայ ու կը ստիպուի Աղթամար կղզին մեկուսանալով ժամանակ մը որոշ ազդեցութիւն ներգործելէ ակամայ հրաժարիլ՝

---

27 Թէոդորոս Հայաստանի անկախութեան կամ առնելի ազատ կառավարութեան իր ձգտումներուն հասնելու համար է որ կանխապէս եռամեայ դաշինք կը կնքէ Հագարացիներու հետ յուսալով այդ ժամանակամիջոցը օգտագործել իր նպատակին ժամանումին, սակայն քաղաքական պարագաները ձեռնտու չեն ըլլար, որով Թէոդորոս Ռշտունեաց տէրն եւ ամենայն իշխանքն աշխարհին Հայոց միաբանեալ հնազանդեցան ի ծառայութիւն (Սեբ․, էջ 222 եւ 223)։ — Պէտք է ուշադիր ըլլալ որ Սեբէոս, ինչպէս եւ Թէոդորոսի ժամանակակից եկեղեցականներէն ու իշխանականներէն ոմանք անոր (Թէոդորոսի) գաղափարակից ու գործակից չէին, իսկ ուրիշներ ալ յետագային իրենց միտքը կը փոխեն՝ կա՛մ Բիւզանդիոնէն վախնալով եւ կա՛մ ուրիշ հայեցակէտեր հետապնդելով, մասնաւորապէս անոնք դժգոհ էին, զի «Փութանակի երթեւեկս» ունեցած էր Իսմայելացիներու հետ (Սեբ․, էջ 224 եւ 226)։

«Քանզի Ռշտունեաց տէրն անկաւ յախտս հիւանդութեան եւ չոգաւ անկաւ յԱղթամար կղզի: Եւ ոչ գոյր նմա կարողութիւն ելանել արտաքս կամ խորհել ինչ եւ բաժանեցին զերկիրն ըստ թուոյ իւրաքանչիւր հեծելոց եւ կարգեցին հարկապահանջս ոսկւոյ եւ արծաթոյ: Եւ սաստ էր տեսանել զաղէտս տարակուսի... ոչ գոյր մարդկան տեղի փախստի եւ թագստեան եւ ոչ խնայել ի ներքուստ...» (Սեբէոս, էջ 238—239):

Թէոդորոս այս ամէն բանէն դժգոհ՝ «Խնդրեաց իւր զօրս յԻսմայէլացւոց, զի հարցէ զՀայսն եւ հալածական արասցէ եւ զՎիրս սատակեսցէ ի սուր սուսերի» (անդ, էջ 238—239):

Հակառակ նախորդ քիչ մը ճախորդ ձեռնարկին Հագարացիներու բանակը օրէ օր աւելի կը զօրանայ եւ գրաւած հողերուն վրայ կը հաստատուի: Մանաւանդ թէ կրնայ անոնց դեռ նոր երկրամասեր կցել: Մուշեղ Մամիկոնեան, երբեմն հելենասէր ու բիւզանդական քաղաքականութեան հետամուտ, Իսմայէլացիներու կողմը կը հակի: Իսկ ինքը — Թէոդորոս — աւելի ուղիղ կը գտնէ իր քայլերը նոր եւ պարտաւորիչ պարագաներուն — փորձն ալ կը ցուցնէր թէ հեղեղանման հոսանքին դէմ կարելի չէր դիմադրել (Սեբ., էջ 241—242):

Հ. Աճառեան կը գրէ՝ «Արաբական պետութեան առաջին շրջանի բնագրութեան եւ յատկապէս Թէոդորոս Ռշտունու քաղաքա-

կան գործունէութեան մասին մի գեղեցիկ մենագրութիւն ունի Բ. Առաքելեան Արմֆանի Գիտական Ժողովածուի մէջ, Երեւան 1941, էջ 65—106, ուր նա ցոյց է տալիս, Թէոդորոս Ռշտունու իբրեւ 7րդ դարի կէսերի ամենատաղանդաւոր եւ փայլուն քաղաքական ու ռազմական գործիչ, որ դէմ գցելով բիւզանդական եւ թէ արաբական կողմորոշումը՝ յանուն հայ ժողովուրդին անկախութեան նախաձեռնող հանդիսացաւ նրա պատմական բախտի պաշտպանութեան եւ միջազգային բարդ պայմաններում պայքարի գլուխ կանգնելով պաշտպանեց նրա շահերը:

Նա կարողացաւ ազատել Հայաստանը Բիւզանդիայի նուաճողական ճանկերից եւ նրա անուանական իշխանութեան տակ իրական տէրն ու կառավարիչը դարձաւ երկրին: Եւ երբ անկախութեան յոյսերը անյաջող անցան, չարիքներու փոքրագոյնը ընտրելով՝ կնքեց Հայաստանի համար ձեռնտու հաշտութեան պայմանագիր Արաբների հետ» (Հայոց անձնանուններ Բառարան, Բ., էջ 298—299):

Թէոդորոս Ռշտունիի Հապարացիներու կողմը հակումը Լէօ կ՚որակէ «Շատ նշանաւոր քաղաքագիտական մի գործ» եւ «պետական լայն ըմբռնողութեան մի գործ» (Պատմութիւն Հայոց, Բ., էջ 323, հմմտ. եւ վերը):

Գուցէ կարելի է խորհիլ՝ թէ Թէոդորոս Արաբացիներու հետ դեռ աւելի լաւ ու սերտ յարաբերութիւններ մշակելու եւ նպաստաւոր պայմանագրութիւններ կնքելու — կից ուրիշ հետապնդումներու — համար, «Համազգեաւքն խորհեալ գնաց ընդ նոսա (Արաբացիներու հետ) եւ տարեալ իջուցին զնա յԱսորեստան» (Սեբ., էջ 243—244)։ «Իջուցին» բառին վրայ ծանրանալով թերեւս հաւանական ըլլայ մտածել՝ որ Արաբները անոր վրայ մեծ վստահութիւն չունէին եւ կամ անոր կարողութենէն կը վախնային ու երբ իրենց գնաց՝ զինքը բուն Ասորեստան տարին ու նա անդրանիկ դժբախտ զոհն եղաւ արաբական անգթութեան (Laurent, անդ, էջ 90—91 եւ էջ 201—202)։

Ղեւոնդ Երէցի համեմատ Թէոդորոս իր զերդաստանին բնաջնջումի վախէն՝ յունական քաղաքականութեան նորէն հետեւած ըլլայ կամ Յոյներու հետ իր Վարդ որդւոյն հետ Արաբներու դէմ պայքարած, «Գրէր եւ առ Թէոդորոս Ռշտունի (թագաւորն Կոստանդին), որ յառաջն իշխան էր, ասէ, եկ ընդ մեզ ի պատերազմ զօրօք, որ ընդ ձեռամբ քո է։ Եւ ոչ կամեցաւ նա ելանել։ Գրէ դարձեալ երկրորդ անգամ, եթէ ոչ ելցես ընդ մեզ ի վերայ հինին՝ ի դառնալն մերում այսրէն ջնջեսցուք զտունդ քո յազգատոհմէ մերմէ։ Որոյ երկուցեալ ի սպառնալեացն հանդերձէր զորդին իւր զՎարդ երթալ ընդ իշխանին Սմբատայ եւ տայր հրա-

ման նենգութիւն առնել սիրելեացն եւ միաբանել ընդ թշնամեացն» (Պատմ., էջ 13—14. հմմտ. աւելի մանրամասնութեամբ վարը):

Սակայն այս՝ ակամայ ընդառաջում է եւ կեղծիք (ու նենգամտութիւն): Լէօ Թէոդորոսի բնաւորութեան եւ Սեբէոսի աւանդածներու հակառակ կը գտնէ այս բանը (Պատմ. Հայոց, Բ., էջ 328): Հակառակ անոր որ կայսրը՝ Թէոդորոսի որդին պատրիկ կ՚անուանէ (հմմտ. վարը) նա չի պատրուիր եւ մահուան ատեն կը յաջողի զինքն իր սնարին մօտ ունենալ ու անոր կը պատուիրէ՝ «Դիր քեզ ուխտ ընդ արքայն Պարսից (Արաբացւոյ) քանզի զօրացեալ են նոքա քեզ եւ զհարկս, որ ի տունս Հոռոմոց է տալի, տուր ի տունն Պարսից եւ նոցա հնազանդեաց եւ շինեսցի աշխարհն Հայոց եւ յորժամ զայս ասաց՝ եղաւ հոգի նորա եւ մեռաւ» (Շապուհ Բագրատունի, Պատմութիւն, Էջմիածին 1921, էջ 30):

Բիւզանդական արքունիքի կրօնական ու եկեղեցական հարցերու միջամտելու արմատացած սովորութիւնը Թէոդորոսի վրայ շատ ազդած է:

Ահա՝ Վարագտիրոցի մարզպանութեան շրջանին «Առաջնորդութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց տեառն» Կոմիտաս Կաթողիկոսի յաջորդ կ՚ընտրուի հայրապետական աթոռի համար՝ Քրիստափոր, որ սակայն հասարակութիւնը գոհ ձգել չի կրնար (Սեբ., էջ 156—157): Ուստի եւ անոր պաշտօնավա—

ութիւնը կարճատեւ կ՚ըլլայ. «Ընկեցին զնա ի կարգէն եւ հալածեցին զնա անարգանօք: Եւ անդէն փութանակի նստուցին կաթողիկոս զԵզր ի Նիգ գաւառէ» (Սեբ., էջ 157): Այս՝ «Թէոդորոս Ռշտունեաց տէր եւ այլ նախարարք Հայոց հանդերձեցին կացուցանել յաթոռ հայրապետութեան փոխանակ Եզրի զՆերսէս եպիսկոպոս Տայոց» (Յովհ. Կաթ. Պատմ., էջ 83) եւ սա՝ երախտապարտ Թէոդորոսի, Բիւզանդիոնի ինքնակալէն անոր համար «զօրավարութիւն» կը խնդրէ (անդ, էջ 84—85): Կաթողիկոս ու զօրավար կը համախմբուին Դուին քաղաքին մէջ Կոստանդին կայսեր միաբանութեան հրաւիրագրին պատասխանելու (Սեբ., էջ 193—194): Քաղաքական հարցերու մէջ եւս համամիտ են ու համաշունչ: Սակայն յետագային սոյն քաղաքական ու մանաւանդ կրօնական հարցերը կաթողիկոս ու զօրավար իրարմէ կը պաղեցնեն[28] եւ Թէոդորոս Յովհաննէս Մանազկերտցին կաթողիկոսական տեղապահ նշանակել կու տայ (Սեբ., էջ 232 եւ Վարդան, Պատմ., Վենետիկ 1862, էջ 6):

Նմանապէս կը հաղորդուի՝ թէ Թէոդո-

---

[28] Laurentի համաձայն Հայերու Արաբներու յարումի պատճառներէն մէկ կարեւորն ալ Բիւզանդացիներու կրօնական խնդիրներու վէճն էր եւ Թէոդորոս միութեան հարցին մէջ ունեցած է իր ուղղութիւնը (L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919. էջ 200 եւ Սեբէոս, էջ 198): — Դուինի ժողովի մասին հմմտ. նաեւ «Աւետիք» 1949, ԺԲ. տարի, էջ 320—322:

րոս Ռշտունին Յոհան Մայրագոմեցին մինչեւ Կովկաս աքսորած ըլլայ (անդ, էջ 85):

Թէոդորոս որքան ալ պատերազմներու եւ նախապէս անոնց պարտութիւններու կը յատկացնէ իր ժամանակը, սակայն հետամուտ կ'ըլլայ նաեւ իր երկրին զարգացումին ու բարգաւաճումին. «Թէոդորոս Ռշտունեաց տէր, որ չինեաց զԱղթամար կղզին» ու հոն բերդ կը կանգնէ ու վանք կը բարձրացնէ (Ասողիկ, էջ 120· Վարդան, Պատմ., էջ 69· Սեբ., էջ 167):

Նա կը կազմէ ընտանեկան հաճելի մթնոլորտ: Ծանօթ է՝ թէ կ'ունենայ երկու աղջիկ: Անոնցմէ մին՝ կ'ամուսնանայ Համազասպ Մամիկոնեանի հետ եւ կը բախտաւորուի զաւակներով եւ միւսը՝ Գրիգոր Վահեւունիի հետ (Սեբ., էջ 227, 232, 246): Թէոդորոսի որդին Վարդ Պատրիկ[29] կը ժառանգէ հօրն իշխանութիւնը եւ ստացուածքները:

Թէոդորոս Ռշտունի Ասորեստան կ'իջնայ կամ ճշդագոյնս Հագարացիները զինքը հոն կ'իջեցնեն — գուցէ չնորհազուրկ կամ գերի Grousset A., Histoire de l'Arménie, էջ 296—304· ԱրմՖանի գիտական ժողովածու Երեւան 1941, Բ., Առաքելեանի յօդուածը, էջ 81): Եւ անկէ յետոյ այլ եւս իր հայրե-

[29] Զինքը Ք. Պատկանեան վերջին Ռշտունին կը համարի (Ղեւոնդ, Պատմ., էջ 177 ծն.), մինչ Շապուհ Բագրատունին՝ անոր Մուշեղ որդին կը դնէ (հմմտ. վարը):

նիքը տեսնելու բախտը չունենար։ (Դամասկոսի) մէջ ժամանակ մը կենալէ վերջ՝ «Անդ մեռաւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն» (Սեբ., էջ 243) եւ այն՝ կը խորհիմ թէ բնական մահով, եւ թունաւորում կամ արիւնհեղութիւն տեղի չէ ունեցած։

Սեբէոս կ՚աւանդէ թէ «Ռշտունեաց տէրն անկաւ յախտս հիւանդութեան եւ չոգաւ անկաւ յԱղթամար կղզին եւ ոչ գոյր նմա կարողութիւն ելանել արտաքս եւ խորհել ինչ» (էջ 238)։ Կրնայ ըլլալ որ այս հիւանդութիւնը, որուն ինչ ըլլալը Պատմագիրը լռած է եւ որ՝ ինչպէս կը թուի ծանր ալ եղած է, կը կրկնուի — եւ կամ ուրիշ հիւանդութիւն մը արդէն տկարացած զօրավարին վրայ կու գայ — եւ նա օտար աստղերու տակ իր հոգին կը յանձնէ Բարձրեալին։ Սակայն բարեբաստօրէն «Բերաւ (մարմինը) ի գաւառ իւր եւ թաղեցաւ ի գերեզմանի հարց իւրոց» (Սեբ., էջ 243, Յովհ. Կաթ., էջ 87—88)։ Եւ այս պարագան ալ՝ կրնայ բնական մահուան ապացոյց ծառայել։

Թէոդորոսի մահուան թուականը ստոյգ (յայտնի) չէ։ Չամչեան զայն կը դնէ 654ին (Պատմ. Հայոց, Բ., էջ 355)։ Եղեան եւս նոյնը կը համարի յենլով Սեբէոսի եւ Ասողիկի խօսքերու կամ հաղորդագրութիւններու վրայ՝ թէ 648—649ին Տայք փախստական ու ապաւինող Ներսէս Կաթողիկոսը 654ին — յետ վեցամեայ պանդխտութեան — Թէոդորոսի մահէն վերջ կը դառնայ իր պաշ-

տօնավայրը (Սեբ., էջ 244. Ասողիկ, էջ 122, հմմտ. Ղեւոնդի Պատմութեան Ս. Պետերբուրգեան հրատարակութիւնը — 1887 — Ծանօթագրութիւնը, էջ 177—178)։ Թէեւ այլուր կը թուի թէ Եգեան 656 տարին կ'ընդունի (անդ Յառաջաբան էջ ԿԶ)։ Սոյն թուականը հարցականով կը նշանակէ Հ. Հ. Համբարեան (հմմտ. Յուշարձան, էջ 246)։ Ղազարեան 656ի համամիտ է (Armenien unter der arabischen Herrschaft... Marburg 1903, էջ 32)։ Լէօ Թէոդորոսի վախճանումը հաւանական կը կարծէ 659ին (Պատմ. Հայոց, Բ., էջ 328)։ Իսկ Ղեւոնդ Պատմագրի համեմատ Ռշտունի զօրավարը — Մուաւիայի իշխանութեան գլուխ անցնելէ ետքը (661) յոյն ինքնակալէն հրաւէր կը ստանայ Հագարացիներու դէմ ոգորելու, ուստի եւ 661ին դեռ կ'ապրէր (Պատմ., էջ 13), որ սակայն պատմական անցուդարձութիւններու չի համաձայնիր եւ հարկ է չեշտել որ անկէ յառաջ մեռած է։ Պատմական դէպքերը նկատի ունենալով՝ 658 կամ 659 տարիները ընդունելի կը համարիմ քանի մը գրողներու հետ[30] (Աւետիք, 1950, էջ 14. Թերզեան Մ. վարդապետի յօդուածը. Արմֆանի Գիտական Ժողովածու, Երեւան 1941, էջ 81, Բ.

---

30 Հմմտ. Թէոդորոսի մահուան թուականին համար դեռ՝ Hübschmann H., Zur Geschichte Armeniens und der ersten Kriege der Araber ... Leipzig 1875, էջ 42 եւ Grousset R., Histoire de l'Arménie, Paris 1947, էջ 304)։ Օրմանեան Մ. արքեպ. Ազգապատում, Գ. էջ ՃՂԴ—ՃՂԵ, հմմտ. վերը)։

Առաքելեանի գրութիւնը, Հայաստանը արաբական տիրապետութեան առաջին շրջանում եւ Հայերի պայքարն անկախութեան համար)։

Թէոդորոսի մահուան, արաբական արշաւանքներու եւ պատմական ուրիշ անցքերու ժամանակները կամ տարեթիւերը կը մնան տարակուսական եւ կամ քննութեան կարօտ (բնական է որոշ բացառութեամբ)։ Մենք մեր կողմանէ գրեթէ որեւէ զգալի յաւելում կամ կարեւոր սրբագրութիւն եւ ճշգում չկրցանք ընել, վասն զի չունեցանք առաւելագոյն աղբիւր մը կամ նորայայտ գրութիւն մը, քան որ վերոյիշեալ բանասէրներն ու պատմագիրներն ունեցած են։ Իսկ ծանօթ պատմագրութիւններու մասին կարելի է այն վճիռը տալ, զոր Հ. Ակինեան Ղեւոնդ Երէց Պատմագրին համար արտայայտած է՝ «Որչափ ալ ժամանակագրական կողմնացոյց իրեն առաջնորդ ունի Ղեւոնդ, բայց նա չէ կապուած տարիներու, ինչպէս տարեգիր մը, այլ կը պատմէ երբեմն դէպքերը իրենց սկզբնաւորութեան եւ վերջաւորութեան մէջ, թէպէտ տարիներու շարք մը պահանջեն անոնք. ժամանակագրական օժտումները սակայն չեն խանգարեր իր ուղիղ ընթացքը, որուն ուշադիր է միշտ[31]» (Մատենագրական

---

31 Համանման արտայայտութիւն ըրած է Հ. Ակինեան նաեւ Սեբէոսի մասին՝ «Առաջնորդուած պատմագրութեան կրկին ջահերու լուսով — ճիշդ աշխարհագրութեամբ ու հարկաւոր ժամանակագրութեամբ — իր տարեգրութիւնը ընծայած է մեկին. ի հարկէ այս ճշգութիւնը չի կրնար փնտռուիլ ամենուրեք եւ

հետազօտութիւններ, Գ., Վիեննա 1930, էջ 118)։

Արդի բանասէրներու եւ պատմագիրներու անդրադառնալով՝ չէ կարելի առանց գնահատանքի թողուլ տարուած ջանքը. սակայն տալու չէ այնքան մեծ արժէք, երբ տարեթիւ ու ամսաթիւ եւ օրաթիւ կու գան կը համաձայնին, զի տարեթեւին մէջ սխալողը կրնայ եւ միւսներու մէջ սխալիլ — թէեւ աւելի նուազ չափով — եւ երբեմն այդ յարմարումները կրնան պատահական ըլլալ, ինչպէս Մանանդեան կ՚ընդունի (հմմտ. վերը)։ Մանաւանդ համակարծիք ըլլալու է վերջինիս՝ թէ աղաւաղումներ ցանցառ չեն գրչագիր մատեաններու մէջ։ Հայ պատմագրութիւններու եւ ուրիշ երկերու քննական հրատարակութիւնները շատ մութ անկիւններ պիտի կարենան լուսաւորել, ինչպէս եւ արձանագրութիւններ, հին գրութիւններու երեւումներ ու հրատարակութիւններ եւ նոր ուսումնասիրութիւններ։ Ապառնին կրնայ անցեալը պայծառացնել։

Սակայն թոյլ կու տամ ինծի հոս նկատի առնել երկու մատենագիր–պատմագիրներ

---

ոչ ալ այն յաջեցուցիչ ժամանակագրութիւնը, զոր գործածեցին հռովմէական տարեգիրները» (Մատենագրական հետազօտութիւններ, Բ., Վիեննա 1924, էջ 50)։ Նոյն բանասէր Հայրը կանխաւ Շապուհ Բագրատունիի մասին գրած է՝ «Հակաժամանակագրական դէպքերու խառնակոյտ մը, որուն մէջէն ելքը անկարելի է» (Մատենագրական հետազօտութիւններ, Ա., Վիեննա 1922, էջ 209, ուր եւ գրքին արժէքին մասին՝ էջ 207—209)։

իրենք իրենց մէջ: Զոյգ մատենագիրներն են՝ Ղեւոնդ ու Սեբէոս:

Ղեւոնդ Երէցի մօտ՝ Պատմութեան Առաջին Գլուխէն մինչեւ Երրորդ Գլուխին վերջը՝ եղած պատմական անցքերու համար կը հանդիպինք հետեւեալ թուականներու կամ ժամանակի նշանակումներու:

Գլ. Ա. «Նախ եւ առաջին որք եւ Ամիրայ Մումնիք անուանեցան, զի զի. ամ կալեալ զիշխանութիւն Մահմետ մեռանի: Յետ այնորիկ փոխանորդէ զիշխանութիւնն Աբու-Բաքր, եւ Ամր եւ Օթման ամս ԼԸ, ի մետասաներրորդ ամի Հերակղի աստուածապաշտ թագաւորին Հոռոմոց, որ մինչդեռ կենդանի էր... ոչ կարացին սփռել զասպատակս իւրեանց ի վերայ Հրէաստանի... եւ նորա տիրեալ ունէր զիշխանութիւն Հրէաստանի եւ Ասորեստանի մինչեւ ի վախճան կենաց իւրոց» (էջ 3):

Արդ Մուհամետ կամ Մահմէտ 20 տարի իշխելէ յետոյ կը մեռնի, իսկ Հերակղ 31 տարի թագաւորելէ վերջ կը վախճանի (Հմմտ. Վարդան, էջ 68. Ասողիկ, էջ 142. Սեբէոս, էջ 174 եւն եւն): Մահմէտին կը յաջորդեն՝ Աբու-Բեգր, Ամր, որ է՝ Օմար եւ Օթման (Վարդան այս անուններու եւ դէմքերու յաջորդութեան կարգը հակառակ կը շրջէ, Պատմ., էջ 68) եւ ասոնց Ղեւոնդի հետ հայ պատմագիրներէն ոմանք 38 տարւոյ կառավարական շրջան կու տան կամ կ՚աւանդեն (Հմմտ. վերը եւ Կիր., էջ 34, Նաեւ՝

հմմտ. Ղեւոնդի Պետերբուրգեան հրատարակութիւնը, 1887, էջ 172, ուր՝ Պատկանեանի դիտողութիւնները, զորոնք նոյնին ռուսերէն թարգմանութեան մէջ ըրած է, եւ զոր կարելի չեղաւ ունենալ), մինչ Թովմաս Արծրունի (Պատմ., էջ 104) կու տայ Մահմէտի՝ 20, Աբու-Բեքրի՝ 2, Օմարի՝ 20, իսկ Համզէ՝ Աբու-բեքրի՝ 2 տարի եւ երեք ամիս, Օմարի՝ 10 տարի եւ 6 ամիս, Օթմանի՝ 11 տարի եւ 11 ամիս ու Ալիի՝ 4 տարի եւ 9 ամիս (հմմտ. Ասողիկ, էջ 366, ծն. 94, առնուած Դիւլորիէէն)։

Իրականին Մահմէտի յաջորդները 38 տարի չեն իշխած, այլ շատ նուազ։ Հ. Զամչեանի համաձայն (հմմտ. վարը) 24 տարի — 632—656 —, իսկ եթէ Ալիի իշխանութիւնն ալ ներհիւսենք՝ 29 տարի։ Համզէ եւս նմանապէս նոյնքան ունի (հմմտ. վերը)։ Իսկ Encyclopédie de l'Islam մէկ տարի նուազ ունի (հմմտ. վարը՝ ծանօթ.)։

Ուստի ի՞նչպէս լուծել այս հարցը։ Կա՛մ պէտք է Մահմէտի իշխանութեան տարիներէն անոնց վրայ յաւելուլ (14 տարի, հմմտ. Ղեւոնդ, էջ 172) եւ կա՛մ մաս մը անոր իշխանութենէն ու ամբողջ շրջանը Ալիի կառավարութեան, այն Ալիի, զոր ոչ Սեբէոս եւ ոչ Ղեւոնդ կը յիշեն, այլ Մուաւիան, որ 661ին գահին վերջնականապէս կը տիրանայ (հմմտ. Ղեւոնդ, էջ 12)։

Պէտք է նաեւ մտադիր ըլլալ, որ մեր պատմագիրները արաբական իշխանութեան

գոյութիւնը — ինչպէս որ է — Հիճրէթէն յառաջ գիտեն (622 Յուլիսէն յառաջ)։ Այսպէս՝ Մ. Կաղանկատուացին՝ Հայոց 65 (էջ 233), Վարդան՝ 65 կամ 67 (էջ 64), Կիրակոս՝ 67 (էջ 32), Ասողիկ՝ 86 թուին (էջ 98) եւն եւն (հմմտ. եւ Ղեւոնդ, էջ 172, ծն.)։

Նաեւ ներելի չէ ԼԸ թուականը սրբագրել՝ ԻԸ, որով հարցը գրեթէ շատ դիւրաւ կրնար լուծուիլ, վասն զի Ղեւոնդ իր տուած թուին վրայ հաստատուն կը կենայ եւ զայն կ՚ուզէ լեցնել կամ արդարացնել։

Հերակլի թագաւորութեան 11րդ տարին է՝ 621, գուցէ եւ 622, զի 610 Հոկտ. 5ին գահը կը բարձրանայ, որով կ՚ունենանք 659 կամ 660 (621 + 38 = 659 կամ 622 + 38 = 660)։

Ղեւոնդ կը հաստատէ «Եւ իբրեւ թագաւորեաց որդի նորա փոխանակ Հերակլի հօր իւրոյ, յայնմ հետէ դարձոյց Տէր զհոգի արանցն չարաց» (էջ 4)։ Մինչդեռ Հագարացիները Հերակլի օրով իրենց իշխանութեան ներքեւ կ՚առնուն բաւական երկիրներ (հմմտ. Ղեւոնդ, էջ 173, ծն.)։ Գուցէ այն իմաստով ճիշդ է՝ որ անոր յաջորդներու ժամանակ է՝ որ Հայաստան եւ ուրիշ հողեր արաբական նուաճողներու սմբակներու տակ կ՚իյնան։

Ղեւոնդ կը շարունակէ՝ «Իսկ ի գալ միւսոյ ամին խռովեալ սկսան ընդդէմ արքային Պարսից... Եկեալ հասանէին ի վերայ արքային Պարսից, որում անունն էր Յազ-

կերտ, որ էր թոռն Խոսրովու: Եւ մեծ մասն զօրուն հասեալ ապստամբէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից» (էջ 6):

Հերակլ կը մեռնի 641ին եւ 642ին պարսկական թագաւորութիւնը կը յանձնուի Յազկերտի ու Հագարացիները անոր դէմ կ'ելլեն ու Հայաստան կ'ապստամբէն (հմմտ. վերը):

Ղեւոնդ կը հաստատէ թէ «Եւ եղեւ այս ի քսան եւ երկրորդ ամին Աբու-Բաքրայ եւ Օթմանայ եւ Ամրի, իշխանացն Իսմայելի: Եւ դադարեցին յելանելոյ ի վերայ աշխարհիս Հայոց ամս Գ: Ապա ի քսան եւ վեցերորդ ամի նոցին իշխանութեան դարձեալ յարձակէին ի վերայ աշխարհիս Հայոց զօրու ծանու» (էջ 8): Այս՝ — այսինքն Հայաստան ներխուժումը — տեղի չ'ունենայ վերյիշեալներու 22րդ տարին: Արդ՝ 621ի վրայ գումարելով 22 կ'ունենանք՝ 643 (հմմտ. Մարդուցայքի կռիւը): Ապա երեք տարի դադար կայ եւ մէկ տարի ալ գուցէ պատերազմի ընթացք (կամ 622էն հաշուած), 26րդ տարին նորէն յարձակում կը գործեն: Ուստի եւ գումարելով 643ի վրայ 4 կ'ունենանք 647, կամ 621ի վրայ՝ եթէ յաւելունք 26՝ նորէն կ'ունենանք 647:

Ղեւոնդ կը գրէ «Յերկրորդ ամի Կոստանդնոս կայսեր Հոռոմոց, որ էր թոռն Հերակլի, ապա եղեւ առ իշխանն Թէոդորոս, եթէ հէն զարթուցեալ գայ ի վերայ աշխարհիս» (էջ 9), ապա կը պատմուի Դուին քաղաքի առումն, որ Մ. Կաղանկատուացին

համաձայն՝ 647ին (էջ 255), Ասողիկի համեմատ՝ հայկական ՂԵ. Թուին (այս է 646ին, անդ, էջ 98), բայց նա այլուր կը դնէ՝ Կոստանդինի՝ Գ. տարին, որ է 644ին (էջ 120)։ Այսպէս՝ Ղեւոնդ, եթէ Հագարացի իշխողներու իր վերագրած կամ տուած տարիներուն ուշադիր ըլլանք, Դուին քաղաքին գրաւումը կը դնէ 647ին, մինչ եթէ Կոստանդին կայսեր թագաւորութեան Բ. տարին նկատի առնենք՝ այն ատեն 642/43ին (եթէ Երկրորդամինը սրբագրելի չէ)։

Ղեւոնդ իր պատմութիւնը յառաջ կը տանի՝ «Իսկ Հագարացիքն առեալ տանէին զնոսա յերկիրն Ասորւոց եւ դադարեցին յելանելոյ ի վերայ աշխարհիս Հայոց ամս Ժ.։ ...Ապա յետ այնորիկ յերեսուն եւ վեց ամի իշխանութեան նոցա զօր ժողովեալ յարձակեցան ի վերայ աշխարհիս Հայոց, որոց էին գլխաւորք Օթման եւ Օղբայ...։ Եւ դադարեցին յետ այնորիկ ամս Բ.։ Եւ զայս չարիս կատարեալ իշխանացն Իսմայելի Աբու-Բագրայ, Օթմանայ եւ Ամրի յաւուրս իւրեանց վախճանեցան» (անդ, էջ 10—11)։

Դուինի առումէն յետոյ 647—657 տաս տարի դադար կայ եւ երեսուն եւ վեցերրորդ տարին պատերազմ կը սկսի $621 + 36 = 657$ եւ այժմ Ղեւոնդի համաձայն տեղի կ'ունենայ Արծափի կռիւը, ապա երկու տարի դադար, $657 + 2 = 659$, եթէ տարի մըն ալ պատերազմի ընթացք տանք՝ կ'ունենանք 660 (կամ՝ եթէ 622էն հաշուենք)։

Ահա Ղեւոնդի ժամանակագրութիւնը, որուն համեմատ պատմական անցքերը, լոկ ժամանակը նկատի ունենալով, որքա՛ն փոփոխութեան կ'ենթարկուին:

Հոս պէտք եմ սա կարեւոր կէտին ուշադիր ընել՝ որ Ղեւոնդ Թէոդորոս Ռշտունիին արարական քաղաքականութեան հետամտութիւնը չէ չեշտած ու գոհացած է ըսելով՝ «Ընկենոյր (Կոստանդին) եւ զիշխանն Թէոդորոս յիշխանութենէն վասն նենգութեանն, զոր արար առ զօրավարին Պռոկոպայ» (էջ 12. հմմտ. եւ Վարդան, էջ 68): Դարձեալ՝ թէ Ք. Պատկանեան Արծաւի կամ Արծափի դէպքը Համազասպ Մամիկոնեանին կը վերագրէ (Ղեւոնդ, էջ 176—177):

Անցնինք այժմ Սեբէոսի ժամանակագրութեան:

Նա կը գրէ՝ «Կատարեալ Երակլի զկեանս իւր բարւոք ծերութեամբ եւ էին աւուրք իւրոյ թագաւորութեան ամք Լ» (էջ 174): — Հերակղ կը մեռնի 641ին: Անոր մահէն վերջ կը սկսին արարական ասպատակութիւնները (էջ 175):

Ուստի կը գրէ՝ «Եւ եղեւ յառաջնում ամի Կոստանդեայ թագաւորին Յունաց եւ յամի տասներորդի Յազկերտի արքային Պարսից գումարեցան զօրքն Պարսից ընդ Իսմայէլի» (էջ 181): — Կոստանդինի առաջին տարին է՝ 641, գուցէ կարելի է՝ 642 դնել, իսկ Յազկերտի (թագաւորութեան) Ժ. տարին է 642 (նա գահ կը բարձրանայ 632ին):

Սեբէոս կը յաւելու «Եւ եղեւ յերկրորդումն ամի Կոստանդնի թոռին երանելւոյն Երակլի խորհէր Վաղենդին... համբառնալ զինքն ի պատիւ թագաւորութեանն» (էջ 183)։ — Կոստանդինի թագաւորութեան Բ. տարին է՝ 642 կամ 643։

Սեբէոս կը շարունակէ՝ «Եւ անդէն կարգեաց (Կոստանդին) ի կարգն առաջին (Հայ նախարարներէն մի քանին) յամին հինգերորդի թագաւորութեան իւրոյ» (էջ 185, որմէ յետոյ Թէոդորոս Ռշտունիի կալանաւորումը)։ — Կոստանդինի թագաւորութեան Ե. տարին է 646 (կամ 647)։ Սեբէոս կը պատմէ՝ «Եւ եղեւ ի գալ միւսում ամի եկն զաւրն Իսմայէլի յԱտրպատական» (էջ 188)։ — Հետեւաբար Զ. տարին, որ է 647 (կամ 648)։

Սեբէոս կը հաղորդէ՝ «Եւ եղեւ յամին երկրորդի Կոստանդնի յամսեանն Հոռի» Արծափի կռիւը (էջ 190)։ — Չէ կարելի Բ. տարի ընել, զի շարունակութիւն է եւ բաւական շատ դէպքերու իրարայաջորդութիւն կայ, ուստի եւ այդ՝ պէտք է Մանանդեանի հետ սրբագրել Ը. կամ Թ. ամին, այս է՝ 649 կամ 650 (աւելի ճիշդը, հմմտ. վերը)։

Սեբէոս կ՚աւանդէ՝ «Եւ եղեւ ի քսաներորդ ամի Յազկերտի արքայի Պարսից ի մետասաներորդ ամի Կոստասի կայսեր... յամի ԺԹ.երրորդի Իսմայելացւոց տէրութեան». վերջին պատերազմը, որուն մէջ Յազկերտ կը փախչի եւ կը սպաննուի Ի. ամ

թագաւորել յետոյ (էջ 222—223)։ — Յազկերտի 20րդ տարին է 652, Կոստաս-Կոստանդինի թագաւորութեան ԺԱ. տարին է 652։ Իսկ ԺԹ. Իսմայելացւոց տէրութեան, եթէ Օմարի գահակալութիւնը նկատուած եւ անոր առաջին տարին հաշուած է 633, մինչ նա 634ին խալիֆայ կ'ըլլայ։ Սեբէոս խալիֆաներէն զինքը կը յիշէ միայն (էջ 32 եւ 117) եւ անոր Թ. տարի կու տայ կառավարութեան։

Սեբէոս կը կցէ՝ «Ի նմին ամի ապստամբեցին Հայք» — առաջնորդութեամբ Թէոդորոս Ռշտունիին (էջ 222—223)։ — Հայերը տեսնելով պարսկական պետութեան կործանումը, յունական բանակին ակարութիւնը եւ արաբական ուժերու յառաջխաղացումը 652ին կամ 653ին ապստամբութեան դրօշը կը պարզեն՝ լաւագոյն օրերու ակնդէտ։

Արդէն քիչ մը յառաջ Սեբէոս կը գրէր թէ «Իբրեւ լցան ամք Գ. պայմանի խաղաղութեան... հրաման ետ զաւրաց իւրոց (Իսմայէլ) ունել գործ պատերազմի ընդ ծով եւ ընդ ցամաք... յերկոտասաներորդ ամի թագաւորութեան Կոստանդնի» (էջ 223), որով ապստամբութեան թուականը կ'ըլլայ 653։ Իսկ խաղաղութեան պայմանագիրը ստորագրուած էր 650ին, եւ երեք տարի յետոյ 653ին կը լրանար եւ Հագարացին ինքզինքը ազատ կը զգար իր պարտաւորութենէն (էջ 192 եւ 223)։ Ասով Սեբէոսի մէջ (էջ 233) գրուած «Եւ եղեւ յամին մետասաներորդի Կոս-

*տանդնի լուծումն լինի հաշտութեանն...»* պէտք է սրբագրել «Յամին երկոտասան-երորդի Կոստանդնի...[32]»:

Իսկ յաջորդ տարին «Ապականիչն չոգաւ եմուտ ի Քաղկեդոն, յամին երեքտասան-երորդի Կոստանդնու...» (էջ 235), ուստի եւ Պոլսոյ առջեւ մղուած պատերազմը կը հանդիպի 654ին, որուն ձմեռնային շրջանը բոլորելէ յետոյ կ'ունենանք 655ի գարունը: «Եւ յայսմ ամի», այս է 655ին կ'ապստամբին Մարերը (էջ 239): Դարձեալ «ի նմին ամի» — 655ին — զաւրն Իսմայէլացւոց, որ ի Հայաստան աշխարհին, կալան ի ծագաց ի ծագս զերկիրն ամենայն: Եւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն եւ ամենայն իշխանքն աշխարհի միաբանեալ հնազանդեցան ի ծառայութիւն» (էջ 242): Այս հետեւանքն էր եռամեայ դաշնադրութեանը, որ հաւանօրէն նոյն տարւոյն ձմերան կամ յաջորդին գարնան կը լրանար (հմմտ. էջ 22 եւ 242): Նմանապէս «Յամին յայնմիկ» — 655ին — Հարիր դահիճին ձեռքը կ'իյնայ Արտաւազդ Դիմաքսեան եւ կը սպաննուի (էջ 242):

Սոյն տարւոյն ցրտաշունչ ձմեռը կ'անցնի եւ «Ի հասանել ժամանակի գարնայնոյն» — ուրեմն 656ին Կարին քաղաքը Հագարացիները կը նուաճեն «Եւ Թէոդորոս Ռշտու-

---

[32] Հմմտ. Histoire d'Héraclius par l'évêque Sebèos, traduit de l'Arménien et annotée par F. Macler, Paris, 1904, էջ 139 ծն. La 11e année de Constantin = 651.

նեաց տէրն համազգեաւքն խուրովք գնաց ընդ-նոսա...» եւ անդ մեռաւ[33] (էջ 243):

*Սեբէոսի ժամանակագրութեան հետեւող է — դոյզն շեղումներով — Ասողիկ (հմմտ. էջ 89, 98, 119—120, երկուքին ժամանակագրական հարցերու համար հմմտ. վերջինին 1885ի Պետերբուրգեան հրատարակութիւնը, էջ 367—370):*

*Հոս հաղորդուած ու նկատի առնուած (նախորդ) անցքերու լուսաբանութեան եւ պայծառութեան համար կ՚արժէ տալ անուն-ները եւ ընկալեալ թուականները (տարինե-րու) այն անձերու, որոնց շրջանին անոնք տեղի կ՚ունենան եւ այդ ատենները կ՚ապրի, կը գործէ ու կը մեռնի Թէոդորոս Ռշտունին: Գրեթէ դարու մը պատկերը կը ներկայա-ցուի:*

Բիւզանդիոնի կայսրներ՝

*Փոկաս* 602—610,

*Հերակլ* 610—641,

*Կոստանդին Բ.* 641,

*Հերակլ* 641,

*Կոստաս-Կոստանդին Գ.* 641—668,

*Մժէժ* 669,

*Կոստանդին Դ.* 668—685:

---

[33] *Անոր մահէն վերջ «յետ վեցերորդի ամի հալածանացն (Թ. Ռշտունիին) դարձաւ անդրէն ի տեղիս իւր (Ներսէս Շինող) եւ հաստատեցաւ յաթոռ կաթուղիկոսութեան» (Սեբ., էջ 244. հմմտ. եւ Վարդան, էջ 69): Ապստամբութեան տարին է 653, որով վերադարձի տարին կ՚ըլլայ 659, ուստի եւ ասով Թէոդորոսի մահուան թուականը 659էն վերջ չէ:*

Պարսիկներու թագաւորներ՝

*Խոսրով Գ.* 631—632,
*Ազարմիդուխտ* 631—632,
*Որմիզդ Ե.* 631,
*Ֆերուխզատ* 631,
*Յազկերտ Գ.* 632—652:

Արաբացի ամիրաներ՝

*Մոհամէտ* 632,
*Օմար* 634—644,
*Օթման* 644—656,
*Ալի* 656—661,
*Մուաւիա Ա.* 661—680 [34]:

Հայ մարզպաններ կամ կիւրապաղատներ՝

*Դաւիթ Սահառունի* 600—601,
*Վարազտիրոց Բագրատունի* 632 (625),
*Դաւիթ Սահառունի* 632,
*Վարազտիրոց* 643,
*Սմբատ* 644,
*Թէոդորոս Ռշտունի* 636—642, *եւս եւ ԺԱ. ամ*,
*Համազասպ Մամիկոնեան* 656,
*Գրիգոր Մամիկոնեան* 659 [35]:

---

[34] Encyclopédie de l'Islam, Paris 1913, *տես՝ Աբուբեքր՝* 632—634 (*Ա. հտր., էջ* 82—84), *Օմար՝* 634—644 (*Գ., էջ* 1050—1052), *Օթման՝* 644—655 (*Գ., էջ* 1077—1080), *Ալի՝* 656—661 (*Ա., էջ* 285—287):

[35] *Չամչեան, Պատմ. Հայոց, Գ., Ժամանակագրութիւն, էջ* 61—63 *եւ* 106:

Հայ Կաթողիկոսներ՝
Կոմիտաս Աղցեցի 611—628,
Քրիստափոր Ապահունի 628—630,
Եզր Փառաժնակերտցի 630—641,
Ներսէս Շինող 641—661,
(Յովհան Մանագկերտցի 649—655),
Անաստաս Ակոռեցի 661—667։

Սեբէոսի անընդհատ կրկնութիւններուն համաձայն Թէոդորոս Ռշտունին զօրավարութեան աստիճան ընդունած է եւ անոր վրայ եկած աւելցած է Պատրկութիւնը։

Զօրավարութեան կամ սպարապետութեան կը բարձրանայ Պարսիկներու Թագաւորէն (Լէօ, Պատմ. Հայոց, Բ., էջ 809) եւ նոյն պաշտօնը կը ստանձնէ Ներսէս Շինող Կաթողիկոսին բարեխօսութեամբ Բիւզանդիոնի ինքնակալէն — արժանաւորութեան համոզումով եւ քաղաքագիտական շահագիտութեամբ (Սեբ., էջ 176, Յովհ. Կաթ. Պատմ., էջ 87)։ Նոյն իշխանութենէն կը զրկուի եւ սակայն կը վերահաստատուի նոյնին մէջ կալանաւորումէ ազատելէն յետոյ (Սեբ., էջ 188)։ Սակայն բիւզանդական արքունիքէն սոյն աստիճանէն բոլորովին ու վերջնականապէս կը մերկացուի, երբ արաբական պետութեան հետ կը դաշնադրուի եւ իր քաղաքականութիւնը կը փոխէ «Յայնժամ նզովեաց Թագաւորն (Յունաց) եւ ամենայն զաւրքն իւր զՌշտունեաց տէրն եւ լուծին զնա ի պատուոյ իշխանութենէն» (Սեբ., էջ 226)։ Թէոդորոս ասոր փոխարէն

Հագարացիներէն կ'ընդունի աւելի յարգանք, հարստութիւն եւ նաեւ իշխանութիւն՝ «Եւ Մաւիաս ետ նմա իշխանութիւն զՀայս եւ զՎիրս եւ զԱղուանս եւ զՍիւնիս» (Սեբ., էջ 233):

Ասողիկ կը հաստատէ թէ «Իսկ զկնի Դաւթի Սահառունւոյ եղեալ իշխան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս ԺԵ» (Պատմ., էջ 88): Իշխանութեան նոյնքան տարի կու տայ անոր նմանապէս Կիրակոս Գանձակեցի, որ զինք մարզպանութեան կը բարձրացնէ «Յետ Դաւթի Սահառունւոյ լինի մարզպան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս քսան եւ հինգ» (Պատմ., էջ 32): Զինք մարզպան գիտէ նաեւ Ստեփանոս Օրբէլեան (Պատմ., էջ 114): Մինչդեռ իշխան, զօրավար ու պատրիկ կը ճանչնան Սեբէոս, Ղեւոնդ եւ ուրիշներ (հմմտ. վերը) ու անոր զօրավարութեան շրջանին տարբեր անուններ իբրեւ մարզպան ու կիւրապաղատ (հմմտ. Յովհ. Կաթ., էջ 85): Այնպէս կը թուի թէ Վարդան եւս Թէոդորոս մարզպան կը նշանակէ, երբ զինք Դաւիթ Սահառունիին յաջորդ կ'աւանդէ (Պատմ., էջ 67), իսկ Շապուհ Բագրատունիին քով Ասողիկի զօրավարութեան կամ իշխանութեան ԺԵ. տարիները ԽԵ.ի վերածուած են (հմմտ. վերը եւ Շապ. Բագ. Պատմ., էջ 28)[36]:

---

36 Հմմտ. վերը Laurent-ի ամփոփումը եւ Տաշեան Հ. Յ., Մայր Ցուց. Վիեն. Մխիթ. Մատ., Վիեննա 1895, էջ 114:

Թէոդորոս իր զօրավարութեան պաշտօնը լաւ կը կատարէ եւ կը ներկայանայ քաջարի, ռազմագէտ ու սպարապետ, որ յաղթանակէ յաղթանակ կ'առաջնորդէ իր զինուորները, թէեւ երբեմն ձախողանք ալ ունենայ: Նմանապէս իբրեւ ազգասէր, քաղաքագէտ ու խոհեմ անձ — քանի մը այլ թաքաւորներ նկատի չառնելով — կը գիտնայ պարագաներու համաձայն ճկիլ ու գործել եւ զանանք ազգին համար շահարեր ընել: Խառնաշփոթ ժամանակներու մէջ ղեկը կրնայ վարել՝ միշտ լաւագոյնին ակնկալու եւ ակնդէտ: Զանազան բարեկեցութիւնն ու շինարարութիւնը (Հմմտ. Բ. Առաքելեան, Արմֆանի Գիտական Ժողովածու, Երեւան 1941, էջ 85)[37]:

Թէոդորոս Ռշտունիին որդին՝ Վարդ իր հօրը առաջնային իշխանութեան ու կալուածներու ժառանգութեան հետ՝ կը միացնէ անոր քաղաքականութիւնը, զոր նա իրեն կտակած էր: (Կեղծ) Շապուհ Բագրատունիին ալ խօսքը՝ «Եւ ուղարկեաց (Թէոդորոս) զՎարդ որդին իւր յերկիրն Հոռոմոց եւ Իբարձ զհարկաւորութիւն Հոռոմոց, զոր տային Հայքն, եւ առն Տաճկաց» (Պատմ., էջ 29) կարելի է համկնալ՝ թէ անիկա իր Վարդ որդին կը ղրկէ յունահպատակ հայկական հողերը, որպէս

---

[37] Յիշենք որ Յ. Տէրմանեան (Տերենց) ունի Թէոդորոս Ռշտունի տիտղոսով վէպ մը, ուր զօրավարին կը տրուի 70 տարեկ կեանք (տպ. Պէյրութ 1936, էջ 304):

գի զանոնք համոզէ յունական լուծը թօթափել եւ արաբական իշխանութեան ենթարկուիլ: Թէեւ Բագրատունի Պատմագիրը լուռ է Վարդ Պատրիկի առած քայլը, բայց անոր գործունէութենէն կարելի է ենթադրել՝ որ նա հօրը կամքը ջանացած է կատարել — ինչպէս վերը ակնարկուեցաւ — հակառակ անոր որ Հոռոմներէն գնահատուած էր եւ Պատրիկ անուանուած (անդ, էջ 30): Զամչեան կը գրէ՝ «Իսկ փոխանակ նորա Թէոդորոսի կարգեցին զօրավար Հայոց զորդին նորին Թէոդորոսի՝ զՎարդ, որ ի գիրս Հայոց հասարակօրէն Վարդ Պատրիկ կոչի» (Պատմ. Հայոց, Բ., էջ 256):

Վարդ Պատրիկ իր՝ գործունէութեան մէջ նենգամտութիւն կը յայտաբերէ: Ինքզինքը խօսքով Յոյներու բարեկամ ու անոնց քաղաքականութեան համամիտ կը ցուցնէ, մինչդեռ գործով Հագարացիներու կ՚օժանդակէ եւ կամ կը ստիպուի այնպէս ընել:

Գայլ գետին քով արաբական եւ յունական բանակներն ընդհարում պիտի ունենան: Վարդ Պատրիկ ինքզինքը Յոյներու յաջողութեան ու յաղթութեան ցանկացող կեղծելով՝ զանոնք կը յորդորէ գետին վրայ կամուրջ շինել՝ միւս եզերքն անցնելու համար: Յոյները (այս անգամ միամիտ) անոր կը վստահին շինուած կամուրջին պահպանութիւնը եւ նա երբ անոնք կամուրջէն կ՚անցնին միւս կողմը, զայն կը խորտակէ: Որով երբ յունական բանակը արաբական զօրքէն կը հա-

բուածուի եւ նահանջել կը բաղձայ կամ կը ստիպուի, կը մատնուի՝ «ի ձեռս Հագարացւոց եւ հարան չարաչար յոյժ» (Չամչեան, Պատմ. Հայոց, Բ., էջ 359. հմմտ. Վարդան, էջ 68)[38]: Իսկ դարձան զօրքն Պարսից (Հագարացւոց) մեծաւ աղթութեամբ եւ Վարդ Պատրիկ զհետ նոցա» (Ծագ. Բաղ., էջ 32):

Ղեւոնդի համաձայն (Պատմ., էջ 13), զոր Laurent կ'ընդունի, այս տեղի կ'ունենայ Թէոդորոս Ռշտունիի կենդանութեանը[39] (անդ, էջ 200 ծն. հմմտ. եւ Աւետիք, 1949, էջ 322):

«Ապա եկեալ ի աշխարհն Վասպուրականի՝ Վարդ Պատրիկ եւ մտեալ ի արքունի իւր որ մօտ էր ի ծովն Ռշտունեաց, որ կոչի Մարեշա[40]» (Մահտաշտ): Կը տեսնէ «երազ հրաշալի» որ իր յանցանքին ծանրութիւնը կը

---

[38] Հմմտ. նաեւ Յակոբ Կարնեցի, Տեղեկագիր վերին Հայոց, Վաղարշապատ 1903, էջ 52:

[39] Կոստանդին հակառակ անոր որ Թէոդորոս «յիշխանութենէ» զրկած է, անոր կը գրէ՝ «Եկ՛ ընդ մեզ ի պատերազմ զօրօք, որ ընդ ձեռամբ քո է: Եւ ոչ կամեցաւ: Գրէ դարձեալ երկրորդ անգամ՝ Եթէ ոչ եկեսցես ընդ մեզ ի վերայ հինին ի դառնալն մերում այսրէն ջնջեսցուք զտունդ քո յազգատոհմէ մերմէ: Որոյ երկուցեալ ի սպառնալեացն, հանդերձէր զորդի իւր զՎարդ երթալ ընդ իշխանին Սմբատայ եւ տայր հրաման ննդութիւն առնել սիրելեացն եւ միաբանել ընդ Թշամեացն: Որոյ երթեալ առ զօրավարն Յունաց՝ չուեցին ի կողմանս Ասորւոց եւ անցին ընդ գետն Եփրատայ: Եւ մատուցեալ որդւոյն Թէոդորոսի առ զօրավարն խնդրէր զինքն կարգել պահապան նաւակամրջացն եւ նորա հրամայեալ նմա պահել զելս զօրայն: Եւ իբրեւ բախեցին ընդ միմեանս պատերազմաւ

պարզէ․ որքա՜ններու կեանքը հնձած է եւ որքա՜ն արիւն պարապ տեղ թափած։ Այժմ արիւնի այդ ծովին մէջ «էր մօտ ի ընկղմել» (անդ, էջ 32)։ Առաւօտ կանուխ Գրիգորիոս եպիսկոպոսին մարդ կը յղէ՝ անյապաղ իրեն գալու։ Անոր կը պատմէ իր երազը։ Իր յանցանքը կը խոստովանի։ Ապա Սիմէոն մենակեացը իր պալատը խորհրդակցութեան կը հրաւիրուի եւ Վարդ Պատրիկ եկեղեցի շինելով եւ ուրիշ բարենպատակ գործերով կը նկրտի իր չարիքին փոխարէն բարիք ընել եւ մեղքը քաւել (անդ, էջ 34—36․ հմմտ․ Markwart J., Südarmenien und die Tigris-quellen…, էջ 79—80)։ Սակայն Յոյները անոր հասցուցած վնասը ․չեն կրնար մոռնալ եւ վրէժ կը լուծեն․ «Ամաց յամս զան մարդիկք ի Հոռոմոց ազգէն առ ի գողանալ գնշխարս ոսկերաց Վարդ Պատրկայ, զի տա-

---

եւ անկան յերկոցունց կողմանցն հարուածք՝ դարձեալ զօրացեալ զօրքն Տաճկաց փախստական արարին զզունդն Յունաց, յաւուր մեծի շաբաթուն Զատկին։ Իբրեւ ետես որդի Թէոդորոսի զյաղթութիւնն Իսմայէլի զօրացեալ անցանէր յայնկոյս գետոյն եւ հատեալ կտրեաց զլարս կամրջին, զի մի ապրեսցին փախստեայքն։ Եւ նոքա ի մէջ արարեալ զզօրսն Յունաց, զոմանս գետավէժս առնէին եւ ոմանք զերծան փախստեամբ յաշխարհն Յունաց» (Ղեւոնդ, Պատմ․, էջ 13)։

Եթէ այս դէպքը կանուխ հանդիպած է, ինչպէս Ղեւոնդ կը հաստատէ, այն ատեն քանի մը հարցեր աւելի դիւրաւ կը մեկնուին։

40 «Շինեաց զհողաբլուր բարձրավանդակն ի Մահոաշտ գեօղ… յորում տեղւոջ յառաջագոյն ապարանք պարսպաւորք եղեալ էր Վարդ Պատրկի Ռշտունեաց Հայկազնոյ» (Թովմ. Արծ., էջ 255)։

բեալ ի մէջ իւրեանց կատարեսցեն ի վերայ նորա պշար կամս իւրեանց, որպէս եւ յօժարի սիրտք իւրեանց» (Առ. Դաւրիժեցի, Պատմ. Հայոց Վաղարշապատ 1896, էջ 486—488)։

Բայց Վարդանակերտի նպաստաւոր պատերազմը անոնց վրայ պէտք էր տարբեր ազդեցութիւն թողուլ (Ասողիկ, էջ 123—124. Ղեւոնդ, էջ 23 եւ Լէօ, Պատմ. Հայոց, Բ., էջ 382)։ Վարդ Պատրիկը ստուգիւ եղած է մէկը, որ ձգտած է քաղաքական պարագաներուն յարմարիլ եւ անոնց համաձայն գործել։ Նա իբրեւ թէ Վարազայ խաչին յայտնութեան ալ ականատես եղած ըլլայ եւ Զ.ամեայ կը մեռնի (հմմտ. նաեւ Տաշեան Հ. Յ., Մայր Ցուցակ հայերէն Ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, 1895, էջ 11)։

Վարդ Պատրիկ Ռշտունին երբեմն կը չփոթուի համանուն Արծրունիին հետ, որուն կինը Տարօնի Ս. Կարապետի վանքին մէջ մտնելուն համար սրահար կը մահանայ, զի կիներու մուտքը հոն արգիլուած էր (հմմտ. Զամչեան Հ. Մ., Պատմ. Հայոց, Բ,. էջ 551, իսկ Վարդ Պատրիկի վանքի մասին հմմտ. Ոսկեան Հ. Հ., Վասպուրական–Վանի վանքերը, Վիեննա 1940, էջ 210)։

Վարդ Պատրիկի մահէն յետոյ «Մնայ որդի նորա Մուշեղ ի նմանութիւն հօրն իւրոյ» որ իր ժողովուրդը դժգոհ կը ձգէ (Շապ. Բագ., էջ 36—37)։ Զինքը իր գարմին վերջինը կը ստիպուինք դնել. «Ապա հա–

կառակութիւն եղեւ տանն Հայոց, զի ոչ կամեցան զտէրութիւն տանն Մանաճի (այս է Ռշտունեաց, որուն ներկայացուցիչը նկատուած է Մանաճիհր) եւ բաժանեցին զաշխարհս ի մէջ Բագրատունեաց եւ ի մէջ Ռշտունեաց» (անդ, էջ 37)։

Յետագային Ռշտունեաց երկրին կը տիրանայ Գագիկ Խաչիկ, երբ Արծրունի եղբայրները Վասպուրական իրարու միջեւ կը բաժնեն (Թ. Արծ., էջ 222)։

Կարելի է ուստի եւ Markwartի հետ արտայայտուիլ թէ՝ «Այս ժամանակէն (705/6) նաեւ Ռշտունիներու հզօր տոհմը կ՚աներեւութանայ[41]» (Südarmenien und die Tigrisquellen..., էջ 79*)։ Թէեւ դարեր վերջ Խաչիկ Կաթ.ի Նախավկայի վանքին տուած կոնդակին մէջ կը յիշուի Գրիգոր իշխան Ռշտունեաց (հմմտ. Ոսկեան Հ. Հ., Վասպուրական–Վանի վանքերը, Բ., Վիեննա 1942, էջ 536, 580)։ Նա կրնար Ռշտունեաց գաւառին իշխան ըլլալ (գուցէ՝ նախորդներէն ոմանք ալ) սակայն Ռշտունեաց նախարարական տոհմէն սերելուն ապացոյց կը պակսի։

Ռշտունիներու նախարարական տունը հայ ազգին կու տայ կարող եւ մեծ նախա–

---

41 Բուղայի արշաւանքներու շրջանին, երբ Զիրաք Ռշտունեաց երկիրը կը մտնէ, չկայ իշխան, չկայ առաջնորդ, որ անոր ընդդիմադրէ եւ նա ժողովուրդը կը գերէ ու կը կոտորէ (Թ. Արծ., էջ 127—128)։ — Ռշտունեաց Գուզանս գիւղի պատերազմի մասին հմմտ. Ղեւոնդ Երէց, էջ 26։ — Ռշտունի մականունը գործածողներ այսօր եւս կան։

բարներ ու զօրավարներ, որոնք արքայական ու Հայրապետական գահերուն եւ նմանապէս ազնուական մեծ գերդաստաններուն հետ ընդհանրապէս լաւ յարաբերութիւններ կը մշակէին եւ հայ ժողովուրդին բարօրութեան կը նպաստէին[42]:

Բշտունիներու (եւ նմանապէս Գնունիներու) տոհմածառը գծելէ լաւագոյն համարեցայ հրաժարիլ, զի բացեր ու պակասներ բաւական զգալի են:

---

[42] Բշտունիները վանք մը ունէին Ս. Երկրին մէջ (Ալիշան, Հայապատում, Բ., էջ 227):

## ԳՆՈՒՆԵԱՑ ԵՒ ՌՇՏՈՒՆԵԱՑ ՅԻՇՈՒԱԾ ՆԱԽԱՐԱՐՆԵՐՈՒ ԱՆՈՒԱՆԱՑԱՆԿԵՐԸ

### ա. ԳՆՈՒՆԻՆԵՐ

## Բ. ՌՇՏՈՒՆԻՆԵՐ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

(Վերջին հատորները)

ՃԾ. Աբեղեան Դկտ. Ա., *Դորբատի հայ ուսանողութիւնը*, Վիեննա 1942, էջք 44: գ. ֆր. 1.—

ՃԾԱ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը*. հտ. Բ. Վիեննա 1942, էջք Ժ + 350: գ. ֆր. 5.—

ՃԾԲ. Ինգլիզեան Դկտ. Հ. Վ., *Հայաստան Սուրբ Գրքի մէջ*, Վիեննա 1947, էջք ԽԷ + 233: գ. ֆր. 4.—

ՃԾԳ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սարդիկէի Ժողովքի հայերէն կանոնները*, Վիեննա 1945, էջք Հ + 132: գ. ֆր. 4.—

ՃԾԴ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սեբաստիոյ վանքերը: Ա. մաս. Սեբաստիա քաղաքի վանքերը*: Վիեննա 1946, էջք ԺԱ + 79: գ. ֆր. 2.—

ՃԾԵ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը*. հտ. Գ. Վիեննա 1947, էջք Է + 743—1134: գ. ֆր. 5.—

ՃԾԶ. Տաշեան Հ. Յ., *Հին Հայաստանի արեւմտեան սահմանը՝ Փոքր-Հայք եւ Կողոփենէ (Սեբաստիա)*: 1948, էջք Ը + 492: գ. ֆր. 6.—

ՃԾԷ. Ակինեան Հ. Ն., *Տեսիլ Ս. Սահակայ. մատենագրական-պատմական քննութիւն*: 1948, էջք Ը + 93: գ. ֆր. 1.—

ՃԾԸ. Ակինեան Հ. Ն., *Ս. Մաշտոց վարդապետ. կեանքն եւ գործունէութիւնը. հանդերձ կենսագրութեամբ Ս. Սահակայ*: 1949, էջք ԺԱ + 473: գ. ֆր. 6.—

ՃԾԹ. Ակինեան Հ. Ն., *Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան. «Գերի Կինը», Ս. Հռիփսիմէ եւ Ս. Նունէ*: 1949, էջք ԺԱ + 348: գ. ֆր. 5.—

ՃԿ. Սեֆուլյա Հ. Օ., *Նոր Կտակարանի գրքերու կարգը Հայոց քով*: 1949, էջք 96: գ. ֆր. 1.—

ԾԿԱ. Աբեղեան Ա., *Գերովբէ Պատկանեան Դիմապատում*: 1949. էջ 54: գ. Ֆր. 1·—

ԾԿԲ. Պօղոսեան Հ. Ե., *Կարապետ Արթին Փաշա Տատեան* (1816—1873): 1949, էջ 84: գ. Ֆր. 1·50

ԾԿԳ. Ակինեան Հ. Ն., *Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու եւ Հայոց եկեղեցական տարին է. դարու սկիզբը*: 1951, էջ 192: գ. Ֆր. 2·—

ԾԿԴ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն Գրնձահանեցի եւ իր թարգմանութիւնները վրացերէնէ*: 1951, էջ 276: գ. Ֆր. 1·50

ԾԿԵ. Տէր-Պօղոսեան Հ. Պ., *Տեղագրական հետազօտութիւններ Հայաստանի մէջ քանի քաղաքներու եւ բերդերու մասին*, 1951, էջ 134: գ. Ֆր. 2·—

ԾԿԶ. Աճառեան Հ., *Եւրոպական փոխառեալ բառեր հայերէնի մէջ*: 1951, էջ Ը + 188: գ. Ֆր. 4·—

ԾԿԷ. Ոսկեան Հ. Հ., *Բարձր Հայքի վանքերը*: 1951 էջ ԺԲ + 230: գ. Ֆր. 4·—

ԾԿԸ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն*: Հատ. Գ.: 1952, էջ 530: գ. Ֆր. 7·—

ԾԿԹ. Ակինեան Հ. Ն. Վ., *Կարմիրն Վարդան եւ Աւարայրի ճակատամարտը ըստ Ղազար Փարպեցւոյ*: 1951, էջ Է + 96: գ. Ֆր. 1·—

ԾՀ. Պօղոսեան Հ. Ե. Վ., *Գույումճեան եւ Թրնկրեան Գերդաստանները*: 1951, էջ Ե + 122: գ. Ֆր. 1·20

ԾՀԱ. Ոսկեան Հ. Հ., *Գնունեաց եւ Ռշտունեաց նախարարութիւններ*: 1952, էջ Ը + 156: գ. Ֆր. 3·—

ԾՀԲ. Ակինեան Հ. Ն., Վ., *Բաղէշի Դպրոցը 1500—1704. Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ Պատմութեան եւ Մատենագրութեան*: 1952, էջ Ը + 390: գ. Ֆր. 5·—

---

*Հասցէ*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**

*Librairie des Pères Mechitharistes*

*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*



